# ՍԻՄԷՕՆ

Simeon, Jararantsi, Vardapet

## ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՊԱՐԱՆՑՒՈՅ

Simeon Vardapeti Aparantsi

# ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ

ՍԱԿՍ ՊԱՀԼԱՒՈՒՆԵԱՑՆ ԶԱՐՄԻ

ԵՒ

ՄԱՄԻԿՈՆԵԱՆՑՆ ՍԵՌԻ.




1870—ՌՅԺԹ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ։

# ՀՐԱՄԱՆԱՒ

## ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ ԳԷՈՐԳԵԱՅ Դ.

ՎԵՀԱՓ. ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Ա Մ Ե Ն Ա Յ Ն Հ Ա Յ Ո Ց։

# ՑԱՌԱՋԱԲԱՆ

Ի դարուն վեշտասաներորդի ծաղկեցաւ Սիմէօն վարդապետն Ապարանցի՝ 'ի մտաբանութենէն Ս. Վանացն Մեծոփոյ. և չև ևս լուացեալ այնր դարուն՝ գրեաց ըղյառաջակայս վիպասանութիւն՝ ոտիւք չափեալ։

Սակաւուց ոմանց մերազնեայ բանասիրաց ծանօթ հռչակի անուն վիպասանութեանըս այսորիկ սակս Պալհաւունեացն զարմի և Մամիկոնեանցն սեռի. զոր նոյն Սիմէօն Վարդապետն Ապարանցի համառօտեաց 'ի պատմութենէ փարպեցւոյն Ղազարայ՝ յաւելլով այլուստ և զերս ինչ։

Իբրև զնշխար մատենագրութեանց նախնեաց մերոց՝ ուրախութեամբ ունիմ ողջունել և ընդունել մերազնեայ բանասէրք ըզհրատարակութիւն սորին։

Ի վիպասանութեանս յայսմիկ պարունակին՝ նախ՝ ստանաւոր համառօտութիւն պատմութեան Ղազարայ Փարպեցւոյ՝ առաւել սակս Պահլաւունեացն զարմի և Մամիկոնեանցն սեռի, երկրորդ՝ յիշատակարան և տաղաչափութիւն Պատմութեան Ապարանից Ս. Նշանին՝ քաղեալ 'ի հեղինակութենէ Նարեկացւոյն Գրիգորի, և ողբ 'ի վերայ Մեծոփայ Ս. Ուխտին, երրորդ՝ համառօտագոյն յիշատակարան տաղաչափեալ վասն առմանն Դաւրիժոյ (Թաւրիզ) յՕսմանայ, և ողբ 'ի վերայ Ազգիս Հայոց։

Զվերջինս գրեալ է հեղինակն յԱզգային Թուաբերութեան մերում ՌԼԴ. այն է՝ յամին Փրկչական 1585 (յորմէ ցՓրկչական Թուականն 1870՝ են միջոցք

իբր 286 ամաց). իսկ զմիւս զերկասեանն գը-րեալ է 5 ամաւ յետոյ՝ այն է 'ի Թուա-կանի ազգիս Հայոց ՌԼԹ. և 'ի Փրկչա-կան 1590 (իբր 281 ամօք յառաջ քան զ1870 ներկայ Թուականս)։

Մի և եթ օրինակ էր վիպասանութեա-նըս այսորիկ 'ի մատենադարանի Մայր Ա-թոռոյ մերում, որ իբր 89 և 104 ամօք յե-տոյ քան զգրութիւնս վիպասանութեանս՝ օրինակեալ է յամի Ազգային ՌՃԼԸ (1689) ընտիր և նոտր գրչութեամբ. Յա-կովբ Երիցու 'ի քաղաքն Բաղէշ 'ի վանսն Ամրդօլոյ՝ 'ի վերջ պատմագրութեան Մատթէոսի Ուռհայեցւոյ ընդ պատմա-բանութեան Յովհաննու Կաթուղիկոսի։

Ի բնագրին՝ խորագիր վիպասանութեանս ունէր զօրինակ զայս. "Շարադրութիւն "Հոմերական վիպասանութեամբ՝ սակս "Պալհաւունեացն զարմի և Մամիկոնեան-"ցըն սեռի 'ի սկզբանէ մինչև ցվախճան՝

"որքի զՀայրսն փոխանակելով, ասացեալ
"բանիւ բարառնական նուսխայօրէն՝ պի-
"տակ անուն Սիմէօն վարդապետի Ապա-
"րանցւոյ՝ 'ի վիպասանութենէն Ղազարու
"Փարպեցւոյն։ Աւգնեա 'Հոգիդ սուրբ
"Աստուած ճշմարիտ։ Ի խնդրոյ երկուց ա-
"շակերտացն՝ Սիրակոսի Այրարատեցւոյ և
"Անանիայի Նախավկայեցւոյ". յորմէ որ-
պէս և այլուստ իմանամք և ցայս ինչ, զի
Սիմէօնն Ապարանցին արարեալ է զայս վի-
պասանութիւն 'ի խնդրոյ երկուց աշակեր-
տացն իւրոց՝ յիշելոց 'ի վերոյ 'ի խորա-
գրին։



# ՍԻՄԷՈՆ

## ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՊԱՐԱՆՑԻՈՅ

# Վիպասանութիւն

### ՅԱՂԱԳՍ ՊԱՀԼԱՒՈՒՆԵԱՑՆ ԶԱՐՄԻ
### ԵՒ ՄԱՄԻԿՈՆԵԱՆՑՆ ՍԵՌԻ։





ԻՍԿ ԶԱՐՄԱՆԻՆ Բանըն բարձրըրեալ,
Ի յոչէից ըզգոյս հաստատեալ.
Նախ ըզհրեշտակըս ներգործեալ,
Լոյս 'ի լուսոյ ստեղծուած սկսեալ.
Երկրորդ՝ զգալիքըս կառուցեալ,
Տարերց քառից մի շաղկապեալ.
Ի սոցանէ զմարդն արարեալ,
Իւրով շնչով շնորհազարդեալ։

Ըզնիւթն 'ի յաղբիւսացն առեալ,
Ըննիւթ զանձին անօթ կազմեալ.
Ընմահական թագիւ պըճնեալ,
Տէր և իշխան անուանադրեալ:
Յայնժամ մարդոյն թագաւորեալ,
Յանեղաշէն աթոռ նըստեալ.
Թէպէտ փութով 'ի վայր անկեալ,
Նա անբանից հաւասարեալ:
Բայց յանուանէն ոչ մերկացեալ,
Ըստ Աստուծոյ վըճիռ հատեալ.
Մինչև որդւոցըն բազմացեալ,
Նա արքայից գահ հաստատեալ:
Յելից դըրախտէն հազար ամ լեալ,
Սամիրոսի թագաւորեալ.
Ըղուրոսի սմա աջակցեալ;
Ա՛յն որ Սեթայ յազգէն սերեալ:
Զմոլորական աստեղս գըտեալ,
Զկենդանակերպս մեզ ծանուցեալ.
Ըստ Նիւթենայ շարըս տասնեալ,
Թագաւորացն որ պետացեալ.
Քըսիսութըրայ վերջին կացեալ.
՝Նաւակառոյց անուն առեալ.

Ի Գորգէ նա ճառաքանեալ,
Ի Բանանայ ըստոյգ պատմեալ։
Զի Քսիսութրայ նաւ կառուցեալ,
Յարևելից 'ի Հայս դիմեալ.
Եւ ցամաքի յորժամ դիպեալ,
Մի ոմն յորդւոցըն հաստուածեալ,
Ի յարևմուտս կոյս բընակեալ,
Երկլուսնեայ օրս զտեղի տուեալ,
Ըզբանակետղն Սիմ անուանեալ,
Ըստ իւր կոչմանըն փոխարկեալ։
Արկին դարձաւ յուստի եկեալ.
Իսկ կըրտսերոյն 'ի Հայս մնացեալ,
Ա'յն որ զՏարօն աւան շինեալ,
Եւ զիւր անունն արձան թողեալ։
Զերեսուն ուստըն յինքեան ցրուեալ,
Ըզհանդըրրուան Յըրօնք կոչեալ.
Բայց ներհըմտիցն անգէտ չեղեալ,
Այս նախ քան Ջրոյն զերկիր ծածկեալ։
Ըզկնի Զըրուանըն բըռնացեալ,
Նահապետին անդրանկացեալ.
Միայն ասէր Թագաւորեալ,
Երկու եղբարցըն գլուխ կացեալ։

Իսկ նոցա զայս յանձըն չառեալ,
Զինքեանս այլոց ծառայ մատնեալ.
Ընդ քաջապէս պատերազմեալ,
Տիտան 'ւ Երեթ միաբանեալ։
Ի յայս խըռան ադմուկ եղեալ,
Եւ խռովութիւնըն յերկարեալ,
Մինչև Աստղիկ քոյրն ասացեալ,
Խաղաղութեանըն միջնորդեալ։
Զգըրգռութիւնըն նուաճեալ,
Զեղբարքըն 'ի մի սէր համոզեալ,
Զդաշինս ուխտին անդ հաստատեալ,
Միայն Սեմայ հընազանդեալ։
Իսկ ծընընդոց սպանումն կնքեալ,
Զի մի՛ ազգաւ Թագաւորեալ.
Զերկուս սըրոյ ճարակ տուեալ,
Զայլըն յարեւմուտս տարամերժեալ.
Ի դիւցընկէց լեռան ընկեցեալ,
Ողոմպիայ այժմ ասացեալ.
Սեմ 'ի կանանցն աղաչեցեալ,
Յայս խորհըրդոցս 'ի բաց կացեալ.
Ըզկեանս որդւոցն լաւ փրկուցեալ,
Քան ինքնագլուխ զուարճանալ.

'Պաղեստինէ յայնժամ հանեալ,
Ի Զըրուանէ Քամու անիծեալ։
  Եւ մինչ ցՅեսու տիրապետեալ,
Ըստ ազգաց եղեն ջընջեալ.
Զօտարածինս 'ի բաց քեցեալ,
Եւ ընտանեաց տեղ պատրաստեալ։
  Յեգիպտոսէ զայգին հանեալ,
Ի սրբութեան լեառըն տընկեալ.
ԶԱբրահամու խոստումն լըցեալ,
Զերկիրն ազգին սեփհականեալ։
  Պարարտութեան որդիք եղեալ,
Ը խուղ ձիթենեացն արմատացեալ.
Երեք պատուով բարգաւաճեալ,
Գեր քան ըզընաւըս ճոխացեալ։
  Այգի սիրեցելոյն տընկեալ,
Եւ օրինացն ցանկով պատեալ.
Նեցուկ որթոցըն ձող ցըցեալ,
Ըզթագաւորս օրինակեալ։
  Գուբ և հընձան 'ի նմա փորեալ,
Ողջակիզաց սեղան շինեալ.
Քահանայից օժանդակեալ,
Մարգարէից պատգամ առեալ։

Զայգին այնպէս փառազարդեալ,
Մինչ երկնայնոցըն քատակեալ.
Սոցա այսպէս պատուօք յարգեալ,
Եւ զայլազգեացըն հոգացեալ ։
Զանսուտ հրամանըն կատարեալ,
Զոր Աբրահամ ունկամբ լուեալ.
Որդւոց նորա թագաւորեալ,
Ծիրըն յընդհանուր ընդարձակեալ ։
Իշխանութեան ցուպըն ծաղկեալ,
Մինչ 'ի Քուշանս շուք արարեալ.
Զի Աբրահամ նոր մանկացեալ,
Իծերութեան զաւակ ծընեալ ։
Ո՛չ թէ միայն զՍահակն ընտրեալ,
Եւ զԻսմայէլըն յոռացեալ.
Այլ ընդ Քետուր զուգաւորեալ,
Եւ վեցեքին որդիս ծընեալ ։
Որոց անուանքն են հռչակեալ,
Եմրան՝ Եկտան՝ Մադան ձայնեալ.
Մադիամայ մեջին կարգեալ,
Սովէ՝ Եսբոք վերջին դասեալ ։
Իսկ Եմրանայ զՄադան սպանեալ,
Եւ զԵկտան եւ կենազրաւեալ.

Աբրահամու՝ որ զայս տեսեալ,
Ի յաղատէն կասկած տարեալ ։
Մասն 'ի յընչէն չորիցն տուեալ ,
Եւ յարեւելս կոյս ուղարկեալ .
Աստանօր բանս ըզկայ առեալ ,
Եւ շարադրօղս 'ի յուշ եկեալ ,
Զհակառակօղսըն մըտածեալ ,
Զորոմնացանսըն խոկացեալ ,
Ըզփարպեցւոյն ճառն ընթերցեալ ,
Ա՛յն որ Ղազարըն կոչեցեալ ։
Փ՛լիսոփային աշակերտեալ ,
Այն անուանն հըպատակեալ .
Ի յԱրծրունեացն ազնուացեալ,
Ի յանապատն առանձնացեալ ։
Յորմէ Ղազարըն համբակեալ ,
Մաքուր վարուցըն նախանձեալ ,
Ի մանկական տիս երեւեալ ,
Ի սընոտեացն արտակացեալ ։
Եւ անդստին սկիզըն տարեալ ,
Յիմաստութիւնըն պարապեալ ,
Ի Յունականն երկիր գնացեալ ,
Եւ զարտաքնոցն հանձարս ուսեալ ։

Աթենացի զինքն առանձնեալ,
Քան ըզնոսա այլ հըմտացեալ.
Եւ յիւրական բընիկն եկեալ,
Ի Մարզպանէն եղև պատուեալ:
Մամիկոնեան Տեառն ընտրեալ,
Վահան ասպետըն շըքեղեալ,
Ի հոյակապըն նըստուցեալ,
Զոր Յիսուսի ուռամբ հարեալ:
Ի Վարդգէսէ նախկին շինեալ,
Եւ Վաղարշայ կըրկին պատեալ,
Վաղարշապատ անուն եղեալ,
Եւ նոր քաղաք Հայոց կոչեալ:
ԶԱթոռն սուրբ 'ի նա յանձնեալ,
Որ Մարզպանին էր սիրեցեալ.
Յորմէ ըզպարտսըն հատուցեալ,
Եւ 'ի սիրոյն կըշիռն եղեալ:
Քան ըզնորա մասն յաւելեալ.
Զի զանկապոյտն փոխանակեալ,
Ըզկամս հայցմանըն կատարեալ,
Եւ Պատմագիր Հայոց եղեալ:
Ի Մովսէսին կարգն ըսկսեալ,
Եւ ըզմնացեալսն վիպասանեալ,

Ի Մարաբայ մատեանս մըտեալ,
Զ Մըծրունացւոյնըն վերծանեալ ·
Եւ զվաղընջուցըն թարգմանեալ,
Հելլէն գըրով նուրբըս գըտեալ,
ՅԱգաթանգեղոսէ գըրոշմեալ,
Ի վերնագրէն զայս իմացեալ ։
Արանց հընգից թագաւորեալ,
Հայոց և Պարթևաց տիրեալ ·
Այլ և զԲելայ բուռըն հարեալ,
Եւ զեղեցիկ ոճով պատմեալ ։
Ի մէջ խօլաց հըսկայացեալ,
Եւ զառաջինըն թագ կապեալ ·
ԸզԲաբիլոն քաղաք շինեալ,
Եւ զինքն աստուած ոմն ասացեալ ։
Զգեղ պատկերըն նկարագրեալ,
Եւ ողջակէզըս մատուցեալ,
Ազգաց բազմաց հրաման տուեալ,
Ծունըր կըրկնել ախտացուցեալ ։
Ոմն նորա (նմա) ընդդիմացեալ,
Եւ զհրամայեալըն անգոսնեալ,
Աբեթածին Հայկն գովեալ ·
Այն որ Հայոց նախնին եղեալ ։

Ընդ դէմ Բելայ գոռոզացեալ,
Ի հիւսիսոյ կողմըն չուեալ.
Իսկ ամարին հետագօտեալ,
Ի կորովի բազկացն մեռեալ։
Հըսկայօրէն 'ի գիրկ մըտեալ,
Ու եռալթունըն Թափանցեալ.
Այնուհետև գոռըն լըռեալ,
Խաղաղական կեանս ըստացեալ։
Հայկազնէի ազգն աճեցեալ,
Մինչ 'ի յԱրայն գեղեցկացեալ.
Զոր Շամիրամ լըկտին շամշեալ,
Այրին Նինոսի արքային լեալ։
Ի համբաւոյ զգեղն իմացեալ,
Սիրեցելոյն Նամակ գրեալ.
Բայց ըղձալին իւր ոչ լուեալ,
Պատերազմաւ ընդդիմացեալ.
Ըզզօրութիւն Հայոց բեկեալ,
Զերկիրն ինքեան դիմագրաւեալ.
Ասուրականըն բըռնացեալ,
ԶՀայքն 'ի նուաստութիւն արկեալ։
Ամաց բազմաց 'ի մէջ անցեալ.
Սենեքարիմ փառամոլեալ.

Այն որ 'ի Հրէաստան եկեալ,
Եւ հրեշտակէն զօրքըն մեռեալ:
Ինքն 'ի յորդւոցըն սատակեալ,
Գոռոզութիւն չարին շիջեալ.
Արրկին Հայոց գըլուխ բարձեալ,
Ի յԱսորոց վըտարանջեալ:
Նախ Զարեհի ըզթագն առեալ.
Ապա Արմոգն արիացեալ.
Զկընի Սարհանգըն սըխրացեալ.
Շաւարշ ըզՓառնաւազ տուեալ.
Այս հինգ երեքինս խրոխտացեալ,
Ըզպատերազմ ազանց վանեալ.
Իսկ Ներհակին օգի առեալ,
Նաբուգոդոնոսոր իշխեալ:
ՅԱսքանազեան գունդըն կոչեալ,
Զթագն 'ի գըլխոյ նոցա առեալ.
Փառնաւազայ այս պատահեալ,
Ի Բաբելոն վախճանն եկեալ:
Բաղդէացւոյն հարըստացեալ,
Մինչև ըզՄարըս նուաճեալ.
Եւ երկոցունց միաբանեալ,
ԶԱքելթածինս 'ի բուռն ածեալ:

Զախողակի իմն աջողեալ,
Վատաբախտիցըն պերճացեալ.
Ըզհայրականըն քէն յիշեալ,
Զորընդ Բելայ՝ Հայկն արարեալ։
Որպէս երբեմն Նինոս խորհեալ,
Ի յԱրամէ վրէժ խնդրեալ.
Բայց թաքուցեալ կեղծաւորեալ,
Զի զքաջութեան համբաւն առեալ։
Տող մարգարտեայ ընծայ յըղեալ,
Եւ զնա երկիրորդ իւր անուանեալ.
Ըստ թունաթափ սոցա եղեալ,
Զհուր բարկութեանըն հըրդեհեալ։
Բազում ամօք զՀայք տոչորեալ,
Մինչ Աղէքսանդր թագաւորեալ.
Սորա Վախէ (հէ) ոմն ընդվզեալ,
Ի Հայկազնի զարմէն յայտնեալ.
Աղէկսանդրէ զմահ ճաշակեալ,
Եւ իւր ցեղին վերջին եղեալ.
Այսուհետեւ անտիրացեալ,
Եւ այր զարամբ ասեն եղեալ։
Վասն այսորիկ դիւրաւ մըտեալ,
Ի Հայս՝ Արշակ մեծն ասացեալ.

Արդ յառաջինըն կարգ դարձեալ,
Իմ Սիմօնի որ զայս ոգեալ։
Զի պատմութիւնս է վերջոտնեալ,
Ըզհայկազանցն անգիտացեալ,
Եւ նորագոյն իմըն սկըսեալ,
Զքետուրածինս ազգաբանեալ։
Զոր 'ի գըլուխ գըրոցս գըրեալ,
Զհինգ թագաւորս նախաճառեալ·
Նմին իրի անդրադարձեալ,
Զելս նոցա ճառէ անսղալ։
Թէ ո՛վ ոք են՝ ուստի եկեալ,
Այս ճոխութեանըս պատահեալ·
Զփ'լիսոփային վըկայ առեալ,
Զիրողութիւնս չորիւք ստուգեալ։
Վերջկոյս զվասն էրըն ծանուցեալ·
Յորմէ և իմ վահան առեալ,
Զի ներհակին դիմի հարեալ,
Փութով ընդ կրունկըն դարձուցեալ։
Եւ ճշմարտին բան զօրացեալ,
Զելուզակաց հոյլըն աղարտեալ·
Թէ առարկեն վասն էր գըրեալ,
Անտապատուասատ ճառս յարմարեալ։

Յայնժամ՝ լիցին շառաւգունեալ,
Յորժամ զպատճէն 'ի ձեռն առեալ.
Եւ Ներսէսի թէպէտ վիպեալ,
Բայց իմս նորա ներհակ չեղեալ։
Ո՛չ 'ի հեռին տարաձայնեալ,
Եւ ոչ զորբերդ բանն երկրորդեալ.
Այլ ըզմիջինըն համբուրեալ,
Որ յաստանօրըն չէ գրեալ։
Խուն ինչ խօսիւք ծայրաքաղեալ,
Որ 'ի նմանէ է մնացեալ.
Եւ զընթերցողսըն թելադրեալ,
Զուսումնասէրս 'ի յայս առեալ։
Որք միանգամ մըտօք հըպեալ,
Զիմաստ տառիցըն ճաշակեալ.
Նոցա և այս չանպիտանեալ,
Այլ դուզնաքեայ քաղցր երևեալ։
Եւ մի՛ 'ի յայս ոք ախտանեալ,
Ի թիւ մեղացն իմ մերձենալ.
Յընդունելոյն օտարանալ,
Պարզամըտաց կարծիս ինչ տալ։
Կամ առ այսու հիւանդանալ.
Խորթ է համ՛րել զայս շարագրեալ.

Թէ այնպիսի՛ մեղօք մեռեալ,
Եւ յիմաստից ունայնացեալ։
 Զփարդ եղև արժանացեալ.
Մինչ զի 'ի Հայս համարձակեալ.
Այո՛ բարոյդ է ձերդ խորհեալ.
Ընթիւ մեղօք. եմ զառածեալ։
 Մինչ զի մըտացս մասին յաղթեալ,
Ու 'ի թըւելն անկարացեալ.
Բայց 'ի հոգին ապաւինեալ,
Ա՛յն որ զտըկարս զօրացուցեալ։
 Նախ հալեացէ զջուրըս սառեալ.
Ապա տացէ հրամանն գընալ,
Այսինքն զմիտս իմ՝ յամառեալ,
Որ չար ախտիւք է զոփացեալ։
 Ցուցցէ շաւիղ անըստերիւրեալ,
Զարքունականքն ընթանալ.
Եւ մանաւանդ ձիր ընձեռեալ,
Ի յայս հանդէս Թիկունս հասեալ։
 Այլ և առ սուրբս ձայն ամբարձեալ,
Մաքուր անձանց զձեռս տարածեալ.
Զի ցօղեսցեն մատըռուակեալ,
Արբուցանել զիս զկարօտեալ։

Եւ իմ 'ի յայս ապաստանեալ.
Դարձայց յուսով եղէ սկըսեալ.
Ըզ Պաղհաւկացըն յայտ քերեալ,
ՅԱբրահամէ շառաւիղեալ։
Նախկին սոցա Եսմրամ գովեալ,
Ի յարեւելս Քուշանս մըտեալ.
Աւր ըստ օրէ փարթամացեալ,
Եւ զՇահաստանըն Բաղհ շինեալ։
Զի էր նորա որդի ծընեալ,
Եւ զանդրանիկըն Բաղհ կոչեալ.
Յորմէ անուանցըն կըցորդեալ,
Երկուցըն մի բայիւ ցուցեալ։
Ի վեհազանցըն զայս ուսեալ,
Ի յարքայից օրինադըրեալ.
Որդւոց ըզհայրս փոխանակեալ,
Մինչ 'ի յԱրշակ քաջն ասացեալ։
Ի մէջ վեհից՝ վեհ երեւեալ.
Եւ տէրութեան մասին հասեալ.
Թէպէտ սուղ ինչ 'ի լուծ մըտեալ,
Սելեւկիայ հընազանդեալ։
Այլ փութապէս ըզնա հերքեալ,
Եւ ինքնագլուխ ազատացեալ.

Վաթսուն և մի ամ յերկարեալ,
Դայեակ որդւոցն իշխող եղեալ։
Աղէքսանդրոյն գահոյն տիրեալ,
Բզկնի մահուան պայազատեալ.
Բայց միմեանց հակառակեալ,
Բզթշնամութիւնըն յաւելեալ։
Պարթևազանցըն զայն տեսեալ,
Զծառայութեան լուծն ընկեցեալ,
Զպատերազմունս սաստկացուցեալ,
Եւ զարևելս յինքեանս թափեալ։
Զթէտալացիսըն գումարեալ,
Ընդ Նիկանով խազմ արարեալ,
Բաբելոնէ զնա հալածեալ,
Ի Դարեհէ գահէն մերժեալ։
Հարիւր 'ւ երսուն ամաց եղեալ,
Եւ չորեքին որդիս ծընեալ.
Միոյն Թէտեալս գահ յօրինեալ,
Թորքոմածնացն իշխան եղեալ։
Միւսոյն 'ի Կիւլիկէ նըստեալ,
Ընդ Ասիացիսըն ճակատեալ.
Զերրորդն 'ի Պարթևս կացուցեալ.
Իսկ չորրորդին զՀայք ժառանգեալ։

Եւ իմ 'ի յայս ապաստանեալ.
Պարծայց յուստէ եղէ սկըսեալ.
Ըզ Պաղհաւկացըն յայտ բերեալ,
ՅԱբրահամէ շառաւիղեալ:
Նախկին սոցա Եմբրամ գովեալ,
Ի յարևելս Քուշանս մըտեալ.
Ուր ըստ օրէ փարթամացեալ,
Եւ զՇահաստանըն Բաղհ շինեալ:
Զի էր նորա որդի ծընեալ,
Եւ զանդրանիկըն Բաղհ կոչեալ.
Յորմէ անուանցըն կըցորդեալ,
Երկուցըն մի բայիւ ցուցեալ:
Ի վեհազանցըն զայս ուսեալ,
Ի յարքայից օրինադրեալ.
Որդւոց ըզհայրս փոխանակեալ,
Մինչ 'ի յԱրշակ քաջն ասացեալ:
Ի մէջ վեհից՝ վեհ երևեալ.
Եւ տէրութեան մասին հասեալ.
Թէպէտ սուղ ինչ 'ի լուծ մըտեալ,
Սելևկիայ հընազանդեալ:
Այլ փութապէս ըզնա հերքեալ,
Եւ ինքնագլուխ ազատացեալ.

Վաթսուն և մի ամ յերկարեալ,
Դայեակ որդւոցն իշխող եղեալ:
Աղէկսանդրոյն գահոյն տիրեալ,
Ըզկնի մահուան պայազատեալ.
Բայց միմեանց հակառակեալ,
Ըզթշնամութիւնըն յաւելեալ:
Պարթևազանցըն զայն տեսեալ,
Զծառայութեան լուծն ընկեցեալ,
Զպատերազմունս սաստկացուցեալ,
Եւ զարևելս յինքեանս թափեալ:
Զթէտալացիսըն գումարեալ,
Ընդ Ակիլանով խազմ արարեալ,
Բաբելոնէ զնա հալածեալ,
Ի Դարեհէ գահէն մերժեալ:
Հարիւր ՚ւ երսուն ամաց եղեալ,
Եւ չորեքին որդիս ծընեալ.
Միոյն Թէտեալս գահ յօրինեալ,
Թորգոմածնացն իշխան եղեալ:
Միւսոյն ՚ի Կիւլիկէ նըստեալ,
Ընդ Ասիացիսըն ճակատեալ.
Զերրորդն ՚ի Պարթևս կացուցեալ.
Իսկ չորրորդին զՀայք ժառանգեալ:

Թէպէտ այսպէս գող զատուցեալ,
Բայց ինքնագլուխ ոչ զոք կոչեալ,
Մինչև զաւուրքըն վըճարեալ,
Արտաշէսի զգահն աւանդեալ։
Եւ այսօրէն անշարժ կացեալ,
Փառք անդրանկացն առաւելեալ.
Առ հարս ասէ լեցին բնակեալ,
Ըզկնի մահուանըն Թագակալ։
Արտաշէսի զայս ուխտ պահեալ,
Երսուն և մի ամ վայելեալ.
Ապա Արշակըն քաջացեալ,
Այն որ զԴեմէտր ձեռբակալեալ։
Յառաւատին յերկիր տարեալ,
Յերկաթեղէնս ըղնա կապեալ.
Անտիոքայ եղբօր լուեալ,
Ընդ Արշակայ սկըսաւ գոռալ։
Յանձուկ տեղւոջ պատերազմեալ,
Ձանդերձ զօրօք տապաստ անկեալ.
Պարթևազինըն զօրացեալ,
Եւ զերրորդ մասն բըռնակալեալ։
Ապա եղբարքըն ձիր շնորհեալ,
ԶՀայաստանեայս 'ի նա յանձնեալ,

Արքայօրէն թագազարդեալ,
Եւ ծիրանի ըզգեցուցեալ։
ԶԱրծրին նորա գահ պարգեւեալ,
Սահման զԵրասխ լեառըն հատեալ,
Մինչ յարեւմուտս ծովըն ծըփեալ,
Եւ զՀիւսիսով անդրադարձեալ։
Մինչ 'ի Կովկաս լեառըն հասեալ,
Որ յարեւելըս կայ ձըգեալ,
Մինչեւ 'ի Մարըս տարածեալ,
Եւ զԱխուլիկէ 'ի մէջ առեալ։
Զայսքան միջոցս յինքն ընկալեալ,
Մերս Վաղարշակ գունագեղեալ,
Իմաստութեանցըն հոգ տարեալ,
Եւ զՀայկազնիս գըրով գըտեալ։
Ընթիւ զօրացըն ամբոխեալ,
Բիւրաւորացն ըզթիւն յաղթեալ,
Ի Մըծբրանայ արտաքս ելեալ,
Եւ յարեւմուտս 'ի մարտ դիմեալ։
Նազարատայ 'նդ առաջ ելեալ,
Ի Հայկազանց փըօեմացեալ,
Ի յարքայէն շընորհ գըտեալ,
Եւ բարեկամըն համարեալ։

Թագաւորին փեսայացեալ,
Զտանուտ՛րութեան պատիւն առեալ.
Իսկ Վաղարշակ զչուն ընթացեալ,
Եւ Թշնամեացն պատուհասեալ։
Արիապէս շահատակեալ,
ԶՄորփիւլիկանըն սատակեալ,
Զիշխանութիւն յինքըն կորզեալ,
ԶՄակեդոնեան անունն եղծեալ։
Եւ այսքանիւք ոչ շատացեալ.
Ամ 'ի յոլովըն ձեռնարկեալ.
Սերունդ ազգին զանձուն առեալ,
Մինչ 'ի Վարդանըն պըսակեալ։
Չորք հարիւր և հինգ ամ տեւեալ,
ՅԱրտաշիսէ Թագըն բարձեալ.
Ի յայս միջոցս բանըս լռեալ,
Ի յոլովէն գոլով կասեալ։
Զի պատմագիրըն ոչ ախորժեալ,
Ըզքերթողին կրկնաբանեալ.
Ամէ գՊ'ենագունս յիշատակեալ,
ԶՄամիկոնեանսըն զեկուցեալ.
Վասըն սոցա դըր'ւականգըրեալ.
Բայց Մովսէսի ոչ ձայնակցեալ,

Ագաթանգեղայ գըղ հետևեալ,
Այն որ զդեսպանս Ճենաց հարցեալ։
Ի սոցանէ զըստոյգն ուսեալ.
Յորմէ գըրով մեզ աւանդեալ.
Մամն և Կոնակըն փախուցեալ,
Ճենաստանէ 'ի Պարս անցեալ։
Կառնամայի որդիք եղեալ,
Որ 'ի յերկրորդ գահն էր նըստեալ.
Յորժամ նորա մահըն հասեալ,
Զկինըն Ճենաց արքայն առեալ։
Ի նըմանէ որդիս ծընեալ.
Եւ զաթոռ հօրըն յաջորդեալ.
Երկու եղբարց միաբանեալ,
Մասն ինչ զօրացըն հրապուրեալ։
Ընդ Ճենբագըրոյ դիմամարտեալ,
Զարքայութիւնըն նախանձեալ.
Յայնժամ Ճենացըն գումարեալ,
Եւ զերորդ եղբարքըն աքսորեալ։
Առ Արտաւան արքայ անկեալ,
Զկենդանութիւն ինքեանց շահեալ.
Իսկ Ճենբագըրոյ զայս իմացեալ,
Մեծ աղերսիւ պարգևս խընդրեալ։

Թագաւորին յարսն խընայեալ,
Միայն բանիւ պատասխանեալ.
Թէ մի՛ լիցի ուխտին լուծեալ.
Զի այսորիկ է իմ երդուեալ։
Յիմ աշխարհէս անեմ գընալ,
Եւ անծանօթս պանդըխտանալ.
Խաղաղասէր Ճ՚ենացն զիջեալ,
Եւ զնըմանէ շնորհակալեալ։
Իսկ արքային զնոսա կոչեալ,
Մեծ ամբոխիւ ՚ Հայս տարեալ.
ՅԱրշակունեացն եղեն պատուեալ,
Ազգ մեծագոյն հըզօրացեալ։
Նախնոյ անուամբըն պարըսպեալ,
Այսու զբոլոր ցեղն որոշեալ.
Այլ և զաշխարհըն ներբողեալ,
Մինչ Աղենայ համեմատեալ։
Բազմատեսակս քըրքըմաւէտ,
Սիրամարգօք գեղեցկացեալ,
Հըրաշէիւք էշ այծեմամբք,
Յամօրէիւք հովիտք լըցեալք։
Ընդլին ակամբք և մարգարտիւք,
Հասարակաց գեղազարդեալ,

Զառ մեզ ազնիւն զհազիւ գըտեալն,
Զթագաւորաց պիտոյացեալն,
Նորա յանպէտս է համարեալ,
Սակս բազմութեան առընդոտնեալ.
Բան զհանուրս պարարտացեալ,
Եւ ըզընակիչս յըղփացուցեալ։
Մինչ տեսողացըն ցանկացեալ,
Երանութեան բանս բարբառեալ.
Անդ՝ ուր այրին ոչ դառնացեալ,
Եւ ոչ որբոյն յոգւոց հանեալ։
Բընաւ հինից զնա ոչ տեսեալ.
ՅԱղէքսանդրէ ոչ աւարեալ.
Ի Մահմէտէ ոչ կասկածեալ,
Այլ խաբկանօք զզօրսն կոտորեալ։
Յորժամ պղծոյն անդ ժամանեալ,
Զաչագեղեայ աղջկունս տեսեալ,
Ջ՛ենքագուրին ըզգացուցեալ,
Երսուն հազար կոյս աղերսեալ։
Իսկ նա զփաչէս սպառազինեալ.
Եւ կանացի զգեստիւ ծածկեալ.
Սուտ մարգարէն այսու փորձեալ,
Եւ սրտութիւնն յանդիմանեալ։

Յորմէ Մահմէտ անմրտացեալ,
Ըստ խըրատուն զփեսուն անցեալ,
Զխառնիճաղանճն յայսկոյս թողեալ,
Եւ զմեծազգիս յայնկոյս տարեալ։
Եւ մինչ կամէր զըւարճանալ,
Ընդ օրիորդացն փափկանալ,
Մանկունքն ՚ի սայլէն վայր հոսեալ,
Եւ զերկսայրին ՚ի գործ արկեալ.
Զերսուն հազարըն խողխողեալ,
Մահմէտ սակաւ արամբ ապրեալ.
Այնուհետև ոչ յաւելեալ,
ԸզՂ'են անուն ՚ի միտ բերեալ։
Զայս ամենայն մեզ ծանուցեալ,
Եւ զոճ բանին առ այլս փոխեալ,
Ըզ՝ Մարսակէ սկիզըն արարեալ,
Աբրահամու ընդոծին լեալ։
Ի Սահակէ ապստամբեալ,
Դամասկոսէ ՚ի Հայք չըւեալ,
Յերկուց լերանց ոտին բնակեալ,
Որ յԱրայի դաշտ նայեցեալ։
Երից որդւոցըն հայր եղեալ,
ՅԱրամանեայն ազգըն խառնեալ.

Զվետան երիցուն անուանակցեալ,
Զնշխազարն Ագատ փոխեալ։
Եւ ընդ սըմա շարունակեալ,
ԶԲուզայս որ զՍտամպօլ շինեալ,
Բիւզանդիոյ յեղաշրջեալ,
Իւրով կոչմամբըն պարփակեալ։
Մինչ Կոստանդին հաւատացեալ,
Զծիր պարըսպին հաստահեղեալ,
Կայսերական անուամբ զըգուեալ.
Այլ Բուզային չանհետացեալ։
Արդ զառաջին ճառն աւարտեալ,
Եւ զհարկաւորըն գըծագրեալ,
Յորով տոհմիւք զանց արարեալ,
Զոր քերթողին է շարադրեալ։
Եւ երկրորդին առընթերեալ,
Այն իմ Ղազարըս սիրեցեալ,
Ըզփոստոսի գիրըն յուզեալ,
ԶԲիւզանդացւոյն սատար առեալ։
Ի սըմանէ աղբերացեալ,
Եւ զշահաւէտս շաղաշարեալ,
Ի Թագաւորս զհիմն եդեալ,
Յըսպարապետս զըլխաւորեալ.

Նախ՝ Արշակայ բարեպաշտեալ,
ՅԱյրարատէ նըժդեհացեալ,
ԶՊարսից կալուած կամաւ թողեալ,
Ընդ անօրէնս ոչ բընակեալ։
Արկադիայ հըռնազանդեալ,
Միծի գըլխոյն անդամ յօդեալ.
Ապա Խոսրով ոմն ասացեալ,
Ի նոյն ազգէ թագաւորեալ։
ԶՍահակ պարթևն յաթոռն եդեալ,
Եւ ընդ Յունաց դաշնաւորեալ.
Յորմէ Շապհոյ ցասմամբ լըցեալ,
Եւ ի կապանս ըզնա մաշեալ։
Վռամշապհոյ տիրէ դարձեալ.
Յորոյ աւուր գիրըն յայտնեալ.
Քըսան և մի ամ յերկարեալ,
Ըզկնի Պարսիկ Շապուհն եկեալ։
Ի յիշխանաց գոլ անպատուեալ.
Ի խընձոյսըն ծաղր արարեալ,
Մինչև Շապուհ մահուամբ լուծեալ,
Վռամ որդին պսակաւորեալ։
Զկապեալն Խոսրով սա արձակեալ,
Եւ Սահակայ ընծայ շնորհեալ.

Արքային ըզգահըն նորոգեալ,
Բայց Բ. ամիս անդ հեշտացեալ։
Ըզկնի 'ի գերեզման մըտեալ,
Արտաշեսի զթագըն թողեալ.
Այն որ կանոնքըն մեղկացեալ,
Եւ զազրութեամբ խենեշացեալ։
Ուստի իշխանքըն զայրացեալ,
Եւ Վռամայ ամբաստանեալ,
Ի գահոյից թըշուառացեալ,
Արշակունեաց վերջին եղեալ։
Այլ երկնաւոր Հայրըն հաճեալ,
Զիմանալին մեզ թագ կազմեալ,
Զգիրն 'ի վերուստ՝ որբոյն շնորհեալ.
Որով Մեսրոպ մըխիթարեալ։
Հանուրց հիւսիս պայծառ ծագեալ,
Երից սեռից լուսաւորեալ.
Թէոդոսի փառուն լըւեալ,
Բարեպաշտին ուրախացեալ։
Ուսանելոյ հրաման հանեալ,
Սուրբըն Մեսրոպ յոյժ մեծարեալ,
Եւ զՄնատոլ ուղեւորեալ.
Ընդ թըրուբոս քաղաք չըւեալ.

Թէոդոսի-պօլիս յեղեալ,
Նախկի անուանըն խանգարեալ.
Մեր Սահակայ ձեռըն տուեալ,
ԶՄովսէս քերթողըն գործակալ։
Հաստահեղուս ծովացուցեալ,
Պէսպէս հնարիւք ամրացուցեալ,
Մինչ Թագաւորն ըսքանչացեալ,
Զվաստակելոյ փոխըն հարցեալ։
Զոր ընտրելոցն պատասխանեալ,
Թէ՝ Աթենայ ենք կարօտեալ.
Յորմէ կայսերն մուրհակ գրեալ,
Ի հրաւետոյսն զնոսա յանձնեալ։
Արքունական Թղթով պատուեալ.
ՅԱթենացւոցըն սիրեցեալ.
Եւ զարտաքնոցն հանճարս ուսեալ,
Բանըն նոսա գերազանցեալ։
Ընդ երկաբնակս մենամարտեալ,
ԶՄարկիանոս զարմացուցեալ.
Այս ընդ Մովսէս Դաւթի եղեալ,
Եւ այլք որոց ընկերակցեալ.
Զիմաստութեան փուշըն բարձեալ,
Որպէս մեղու 'ի մեզ դարձեալ,

Մեծ տրտմութեամբ եղեն զգածեալ,
Յորժամ տեսին ըզայս քանդեալ։
 Ի հոգևոր հովուաց զրկեալ,
Մարմնաւորաց յոյժ հեռացեալ.
Այնուհետև ըսկսան ողբալ,
Եւ զգուշակել ըզմերըս լալ։
 Քանզի յորժամ նոցա գնացեալ,
Առ այլասեռս վտարանդեալ,
Յետնամնացից խաւար տիրեալ,
Ի Յազկերտէ աղօտացեալ։
 Խաղաղութիւնըն քայքայեալ.
Խռովութիւնըն թանձրացեալ.
Արդարութիւնըն նուազեալ.
Եւ գործք մեղացըն խըտացեալ։
 Տեսիլք սըրբոյն զլըրումն առեալ,
Լուսաւորչին մեր արթնացեալ.
Քանզի գառինըն գայլ դարձեալ,
Եւ ընտանին թշնամացեալ։
 Զոր և համայն հօրըն տեսեալ,
Սահակ պարթեւն և սգացուցեալ,
Աթոռ ծովանըման կազմեալ,
Եւ թուխ կտաւով պատըրուակեալ։

Նախարարին փեսայացեալ,
Ընդ Վասակայ դըստերն զուգեալ։
Խորագ Նախնոյն 'ի Նա ազդեալ,
Ատելութեամբ զկինն ատեցեալ.
Զաղմուկ իրին Վասակ լուեալ,
Դէմ պատկերին այլագունեալ։
Գուլթի ընդ փեսայն հայեցեալ,
Զնա 'ի Հայոց երկրէն հանեալ.
Առ Միհրներսեհըն փախուցեալ,
Սատանայի զօձըն գըտեալ։
Հազարապետն յորժամ տեսեալ,
Զարեաց խորհուրդ 'ի միտս արկեալ,
Ի հաւատոցն ուրացուցեալ,
Առ Թագաւորն Յազկերտ տարեալ։
Ըզհողեւոր զանձըն վատնեալ,
Եւ զմարմնաւորըն շահեցեալ,
Հէգն եւ Թըշուառն նախ կուրացեալ,
Ապա Հայոց խորհուրդ խորհեալ։
Եւ Յազկերտի զայս հաւանեալ,
Ի Միհրներսեհէ լըրտեալ.
Բանսարկուէ զարքայն սըրբեալ,
Թէ Հայք ընդ Յոյնս են միացեալ։

Յորմէ Յազկերտ 'ի սաստ բրդեալ,
Երկից սեռից գըլըով ազդեալ,
Կամ ուրացին՝ ասէ՝ զխաչեալն,
Կամ մերըս դից զոհեն զհեստեալն։
Հայոց՝ Վըրաց և Աղուանից,
Ամենեցուն մի անձն եղեալ,
Սուրբն Վարդան Մամիկոնեին,
Զանդերձ այլովք հանդիսացեալ.
Նախ 'ի յԱղուանս պատերազմեալ,
Զոր Վասակայ ուխտին սրտեալ,
Եւ նախարարս կեղծիւք խօսեալ,
Ըզկէս զօրացն փեռեկտեալ։
Իբրև վիշապըն դարանեալ,
Ի սուրբ գընդէն մեր անջատեալ,
Միհրներսեհի դեսպան յըղեալ,
Թէ ձեր կըռոցն եմ նուիրեալ։
Ընդ Վարդանայ սաստիկ երդուեալ,
Զհաստատուն կալն խոստովանեալ,
Նա 'ի յԱղուանս քաջաբերեալ,
Ինքն ընդ Պարսիկըն խըրախուսեալ։
Սպարապետին ներհակս մանրեալ,
Ի յԱրարատ աճապարեալ,

Հանդերձ զօրօքն անդ ձըմերեալ,
Մինչ հարաւոյ հողմըն շարժեալ։
Որրկլին Պարսից ապստամբեալ,
Առ Տըղմուտ գետըն բընակեալ.
Զօր ազգն Հայոց գըրոհ տըւեալ,
Զգունդն այլազգեաց ՚ի մէջ փակեալ.
Զպատերազմըն հընչեցուցեալ,
Զաջ և զահեա՛կ թևըն բեկեալ.
Յայնժամ Վասակ պիղծն անիծեալ,
Ի Թշնամեաց կողմն յաւելեալ։
Ի Քրիստոսէ յետըս կացեալ,
Պարսից դենինըն միանակցեալ.
Դաստապանէ իւրմէ դատեալ,
Աղօթք նորա ՚ի մեղս դարձեալ։
Ի հաւատոյըն զըլացեալ,
Ատրուշանին ծունըր կըրկնեալ,
Խուրբ հօտէն մեր հատուածեալ,
Եւ փեսային հաղորդակցեալ։
Թէպէտ այլ իմըն փաստ առեալ,
Եւ վասն որդւոցն՝ ուխտին դըրժեալ,
Որք առ Արքայն կային գրաւեալ,
Բաբքն և Ներսեհ պատանդ կացեալ։

Ըստ զՅուդայիւն էր խոնարհեալ,
Ըզգահութեամբըն յիմարեալ.
Եւ ո՛չ այսու մասին հասեալ,
Զաւրանենդիցըն զան արկեալ։
Ի յԱրքայէն ղի կողոպտեալ,
Այն որ փառացն էր ակն ածեալ.
Ի խոստացեալ պատույն զրկեալ,
Եւ ձաղանօք յերկիր քարշեալ։
Սկըզբընաչարին կերպարանեալ,
Զյաւիտենիցըն կործանեալ.
Ի յարգողացըն ղըսրոմեալ,
Զպատժապարտիցըն զան առբեալ։
Ի սիրելեացն ապտակ առեալ,
Զի 'ի Տեառնէ էր խորթացեալ.
Ի հոգևոր հացէն սովեալ,
Մարմնաւորէն ղատարկացեալ։
Մեռեալ հոգւով կայր տատանեալ,
'Փըրկութենէն յուսահատեալ.
Խըղճմըտութեամբ դատապարտեալ,
Զցայգ և զցերեկ զինքն աշխարեալ։
Ողբոյէր զպատկերըն տըժգունեալ,
Բախէր ըղկուրծսըն խըռտացեա .

Վա՜յ տայր անձին աղաւաղացեալ,
Ի ծանօթից դատապարտեալ։
Զի ուրացմամբն ոչ յագեցեալ,
Եւ ինձ չար գուն գործեցեալ.
Զազատ որդիսըն տառանեալ,
Եւ Յազկերտի՝ ձեռըն մատնեալ։
Ուր ժանտ սերմանց փոխանակեալ,
Զմատաղ մանկունս սըրով մաշեալ.
Ընձեղ արեանցըն բողբջեալ,
ԶԱստուած վըրէժխընդիր շարժեալ։
Ուրացողին զտանջանս կըրեալ,
Եւ պղտոնացեալ ոգին փըրչեալ.
Իսկ փեսային ուրախացեալ,
Զի զըթշնամին ետես անկեալ։
Ի Յազկերտէ զՍիւնիք խընդրեալ,
Եւ վաստակոյն վարձ պահանջեալ.
Նա և Ներսեհըրն միջնորդեալ,
Թագաւորին բարեխօսեալ։
Վարազվաղան զպատիւն առեալ,
Եւ զանձրոյն գահ ժառանգեալ.
Բայց զպատիժն աչօք տեսեալ,
Մինչ էր մարմինն յապահովեալ։

Ի չար դիւէ այսահարեալ,
Եւ ատամամբ զմիսն կերեալ.
Բազում ամօք այնպէս լքեալ,
Ըզպիղծ զըլուխն զետնի հարեալ:
Աստէն զառհաւատչեայն ճաշեալ,
Անդէն զհըրնոցըն բորբոքեալ.
Իսկ սուրբ գընդին որ մաքառեալ,
Արիաբար նահատակեալ,
Զբաժակ մահուն սիրով արբեալ,
Եւ պըսակացն արժանացեալ.
Ի՛կէտ զարնանըն փըթըթեալ,
Ադին դրախտին տունկ բազմացեալ:
Ընդ իմանալի ծաղկանց ծաղկեալ,
Եւ ընդ հրեշտակս դասաւորեալ.
Զանդերձ զըլխովն ոտըն բարձեալ,
Որով մարմինն էր զարդարեալ:
Զի յետ հօտին զհովիւս կալեալ,
Ըզ Ղևոնդեանս գերի վարեալ,
Ի Պարսկաստան թափառնացեալ,
Սովալըլուկ կայլին բանտեալ:
Եկեղեցիքս սըգամածեալ,
Զի զպաշտօնեայս ետես տըխրեալ.

Առագաստին ամայացեալ,
Ուր զփեսային էր զընտանեալ։
Ընախտ հարսին այրիացեալ,
Ուր հարսնածուս ետես թախծեալ.
Աւրիորդաց սևազգեստեալ,
Ուր Թագուհին էր թարշամեալ։
Պարաւորացն աղաւաղեալ,
Ուր երգեցողն էր համրացեալ։
Կոչեցելոց սեղան կապտեալ,
Եւ կերակուրն անհամացեալ։
Ուր զքահանայս ողջակիզեալ,
Ի յանապատ անթաղ մնացեալ.
Քանզի մոգուց զԱրքայն կրատեալ,
Յորժամ 'Քուշանս եղև պարտեալ։
Ասեն՝ թէ՝ դիցն է բարկացեալ,
Վասն այն ջարձայք գըլխակորեալ.
Բայց թէ կամիք ըզքաղցրանալ,
Եւ զթըշնամեաց նըկուն դառնալ,
Նոքա լիցին մահու մատնեալ,
Եւ ոսկերացն յանպէտս ձգեալ.
Ուր մի՛ նըշխարք պատուասիրեալ,
Ի մոլորեալ Ազգէն թաղեալ։

Այս թէ ոչ՝ մեզ է ողբալ,
Եւ թշնամեացն ուրախանալ:
Իսկոյն Արքայն ժամուրն կոչեալ,
Ըզ Պէնշապուհըն մոլեգնեալ,
Ի Նիւշապուհ քաղաքն յղեալ,
Ըզքահանայսն 'բանտէն հանեալ,
Նախարարացըն մաղկատեալ,
Եւ զարտասուս պաշար եդեալ:
Թէ աւքն էք հանդերձեալ,
Աղաչեցէ՛ք 'ի մեզ գըթալ,
Ընջատեցին զ—արքն երանեալ,
Քաղցրիկ յորդուոըն որբացեալ:
Իզիշերի զանխուլ տարեալ,
Գայլըց զգաւթնուըն փողոտեալ.
Ըզգուշութեամբ զայս արարեալ,
Զոր չար մոգուցն էր ուսուցեալ:
Իսկ որ 'ի Նարձունս է բնակեալ,
Ըկամք զանդուներըս նըկատեալ,
Ըզմահ սըրբոցն ոչ թագուցեալ,
Ամլ մընդհանուրս փառաւորեալ:
Քանզի խուժիկ տիքն ձայնեալ,
Քահանայիւ ծանօթացեալ,

Ի սէր որբոցն հօգւով վառեալ,
Գաղտագողի զհետ գընացեալ։
Իսկ Գէնշապհոյ ցընա հարցեալ,
Թէ զի՞ է քո ընկնիլ մեր գալ.
Նա ըզկասկածըն փարատեալ,
Եւ զեղկելոյ միտս գողացեալ։
Ականատես որբոցն եղեալ.
Եւ ըզտեղին նըշանակեալ.
Արտասուալից կանգուն կացեալ,
Զձեռս 'ի յերկինս տարածեալ։
Մինչև որբոցըն պըսակեալ,
Եւ զըեւլեար պատրաստանեալ.
Անօրինացն 'ի բաց գնացեալ,
Այլ Բ. զինուորս պահօղ եղեալ։
Ի Յիսուսին տըրպաւորեալ,
Յաշակերտացըն կասկածեալ,
Զօրականացն ընդարմացեալ,
Եւ չար նիրհմամբըն ծանրացեալ։
Յանկարծակի լուսոյ ցայտեալ,
Ահեղ ձայնիւ փայլատակեալ.
Անօրինացն յաշէն պակեալ,
Անկան յերկիր որպէս մեռեալ։

Լոյսն ըզԽուժիկն քաջալերեալ,
Եւ 'ի տեղին առաջնորդեալ.
Յայնժամ արծիւ յերկնից իջեալ,
Զմարմին սըրբոց նըմա ցուցեալ։
Ահիւ մեծաւ ողջագուրեալ,
Զանգին ակունսքն հաւաքեալ,
Նախարարացըն մատուցեալ,
Եւ հաւաստեաւ զերըն պատմեալ։
'Վաճառականըն երանեալ,
Զաւիթ կենացըն վաճառեալ.
Յայնժամ նոցա փառըս տըւեալ,
Եւ ընդ ինքեանս 'ի Հայս բերեալ։
Սուրբքըն Յովսէփ հոգւոյն օծեալ,
Եւ Ղևոնդեայ աստուածարեալ,
Մուշէ՝ Արշէն՝ Բաջաջ՝ ընտրեալ,
Եւ Սամուէլըն սըրբասնեալ։
Իսկ ըզԽորէն և զԱբրահամ,
Նախարարօքըն բաժանեալ,
Ի յարքունիս սպասու կալեալ,
Յասորեստան արքանեկեալ։
Խորէն անդէն առ Տէր փոխեալ,
Իսկ Աբրահամ առ մեզ դարձեալ,

Եպիսկոպոս Բըզնունեաց լեալ,
Եւ ճըգնութեամբ զվախճանս առեալ:
Արդ թէպէտ այս այսպէս եղեալ,
Բայց չէր վերջին ըզմեզ գըտեալ.
Այլ բարկութիւն Տեառըն ծածեալ,
Եւ գերելոց դարձ արարեալ:
Ի Յազկերտէ հրաման հասեալ,
Զազգըս Հայոց սիրով նուաճեալ,
Ըզսինլիքորսըն յանձանձեալ,
Եւ զՊատրոմիզտ իշխան կարգեալ:
Աշուշայի Յազկերտ մըտեալ,
ԶՀըմայեկայ զորդիս խընդրեալ,
Ի Վասակէ նոցա տարեալ,
Եւ շըղթայիւք պարաւանդեալ:
Թագաւորին ո՛չ յապաղեալ,
Զմանկունսն 'ի կապիցն արձակեալ.
Յորմէ բըղեշխն նախատացեալ,
Արտասուօք ըզՏեառնէ գոհացեալ:
Զի մահապարտքն եղեն փրկեալ,
Եւ 'ի պատիւ համարձակեալ.
Ի յայսմ ամի չարըն բարձեալ,
Եւ Պերոզի թագաւորեալ:

Փոխան անմահ սուրբ Սեղանոյն,
Պիւղականին հաղորդէին.
Քանզի բարձեալ էր տէր հօտին,
Եւ վարձկաննացն ոչ ցաւէին.
Ընդ բուռ գայլոց քանդապարաց,
Զգերս և զփափուկս խողխողէին.
Խօղեալ զնախնեացըն քաջութիւն,
Զիմաստութիւնս ոչ խնդրէին.
Ընօրինաց ծաղր արարեալ,
Զվարս և ըզկրօնս քամահէին.
Հայհոյելով անարգելով,
Որ ըստ օրէ ըզկծեցուցին,
Ըմպանելով կատակելով,
Ըզտառապելոյս ձանձրացուցին.
Քան ըզՊարսիցն այլ առաւել
Մեր ուրացողքն նախատէին,
Յորմէ Մախազըն Գուգէնշը,
Գըլուխ խաւարելոց դընդին.
Ո՛չ յազգենայք իւրոց չարեացն,
Ըմն յորդորէր զամենեսին,
Յուրացութիւնըն բըռնալով,
Խորհէր զդասս փոքու հօտին.

Որպէս զվիշապ բերանաբաց,
Կամէր կլանել բոլորովին.
Տեսեալ հօտին զինձն արձակեալ,
Եւ ծարաւի արեան նոցին.
Տարակուսեալ ակնարկէին,
Եւ ընդհովիւըն յուզէին.
Գըտին ընդԳիւտ զերանելին,
Իսուրբ Գըրիգորըն նըստուցին։
Փոխեաց զԱթոռ մեծն 'ի Գըւին,
Յահէ նեղչացըն Պարսկային.
Մըրցեալ սըրբոյն ընդ Մախաղին,
Եղև յաղթող չար վիրաքին։
Եհար զծամկատ Գողխաթին,
Բանիւ խրատու պարսաքարին.
Որով վառեալ հուր նախանձին,
Չարախօսեաց յունկն արքային։
Թէ զտէրութեանդ քո մըտերիմ,
Եւ զհաւանողս ձերոյ դենին,
Կացեալ նոցա Առաջնորդին,
Պատրէ յօրէնս Մեսիային։
Կամի դընել ուխտ ընդ Կայսերն,
Աշխատ առնել զձեզ 'ի մարտին.

Լուեալ ըզբանս աւագանոյն,
Կոչեալ ըզԳիւտ հարցանէին:
Պատասխանեալ Կաթուղիկոսն,
Զճշմարտութիւն կարծեօք բանին.
Զմինն 'ի յերկուցն առեալ յա՛նձին,
Միւսոյն ասաց չեմ տէր բնաւին:
Զօրէնս պատմել զՄեսիային,
Արդա՛ր է այդ իմոյս անձին.
Այլ միաբան լինել Յունին,
Չէ իմ խորհեալ ամենևին:
Հաւանելով հրապարակին,
Զճշմարտութիւնըն գովէին.
Անձնագեղեայքըն Պարսկային,
Շարժեալ ըզգլուխս հեթանային:
Գերձապա՛ձոյծ և նա՛զելի,
Անհամեմատ տեսանէին.
Ելամացիք և Սկիւթացիք,
Ըստ Մարգարէ զնա ունէին:
Միշտ տեսողացն երանելին,
Եւ լըսողացն զքարոզս Բանին,
Վառեալ 'ի սէր Հայրապետին.
Ամբարտաւան Թագաւորին,

Պատուով պահեալ 'ի յարքունիս,
Նա որոգայթ կազմէր նըմին.
Մինչև յայտնեաց զխորհուրդ սրրտին,
Թէ լե՛ր մոգպետ դու քո ազգին:
Ապա թէ ո՛չ կա՛ց 'ի գործոյդ,
Օձի տաց զպատիւդ յանձն առնողին:
Պայծառացեալ տիպ պատկերին,
Որպէս սրբոյն Սանդխտանոյին,
Համարձակեալ չըքնաղագեղն,
Յանդիմանէ զպաշտօնս նոցին.
Ասէ՝ պատիւ չէ՛ տուրք քոյին,
Այլ երկնաւոր թագաւորին:
Բայց թէ անձինս պատժեալ չարին,
Թողում ինձէն զայս կամոքին.
Յանկայ վըկայ լինել Փըրկչին,
Ըստ Ղևոնդեանց սուրբ երամին:
Այլ ոչ հաստատ վըճիռ սըրտին,
Թուլորութեամբ թագաւորին.
Քանզի բարձեալ զօրըս նոցին,
Աստուածարեալ Հայրապետին,
Նախարարաց յահէն ապշեալ,
Ըստ հրեշտակի զնա պատուէին.

Մանուկ մատաղ 'ի ծակ իժին,
Ոչ մեղանչեաց իժըն նըմին։
Զուարթ դիմօք ազատացեալ,
Ճ'ոխ ճեմելով 'ի պաղատին,
Իւրով կամաւ կացեալ 'ի Պարս,
Ապա դարձաւ 'ի հայրենին։
Եհաս սըրբոյն ժամ ծերութեան,
Խոնարհեցաւ 'ի գիրկ ծընողին.
Եւ բարեխօս է տօնողացս,
Առ Միածին որդի Կուսին։
Տասն ամ կացեալ կաթուղիկոս,
Հովուէր ըզհօտ Տեառն Յիսուսի.
Ապա Յօհան Մանդակունին,
Եկեղեցւոյ տուն տենչալին։
Յետ այսորիկ լարեալ չարին,
Զիւր մեքենայն բազմագունին,
ԶՄախազ մըխեալ սըլաք նետին,
Ձըգեալ 'ի ցեղն Մամիկոնին։
Զկայծեալ պատրոյկն 'ի Վասակէ,
Շիջուցանել զայն կամէին.
Զերծեալ որդիսն Հըմայեկին,
Մատնեալ 'ի ձեռըն Պերոզին։

Տեսին զՎահան սէգ և պըրոյկ,
Ընդ յաջողիլըն մախային.
Այնքա՛ն ըզհուրըն փըքեցին,
Մինչ զդալարին տոչորեցին։
Կոչեալ զՎահան 'ի պաղատին,
Ի հաւատոցըն քննեցին.
Տըկարանայր արտասուելըն,
Եւ ախտանայր զանբուժելըն։
Կամէր այսու յաղթել մարտին,
Խընուլ զբերան չարախօսին,
Ոչ գիտելով զգէտ փորձողին,
Եւ զհայթայթանս բելիարին։
Ոչ ածելով 'ի միտ զնախնին,
Որ որսացաւ յուռկանս նորին,
Եհան ըզզըրահն անխըրզելին,
Մերկ մարտընչէր ընդ Թըշնամին։
Շուրջանակի զնա պատեցին,
Վէրք ընդ վիրաց յաճախեցին.
Դարձեալ զարքայն բանսարկեցին,
Թէ դաշնադիր է կայսերին։
Կամի կուտել զհարկ աշխարհին,
Ընդդիմանալ քում հրամանին.

Լուեալ Մահան ըզլուր գուժին,
Գնաց ինքնակամ 'ի յարքունին։
Բերեալ զՄըրչայ չար Ասորին,
Զամբաստանող սպայապետին.
Պապանձեցաւ 'ի յատենին.
Որկին զՄահան իշխան եղին։
Թէպէտ այսպէս պատուհէին;
Այլ խըղճմըտանքն թոյլ ոչ տային,
Յորժամ յիշէր զբանս Տէրունին,
Զտուժիլ անձին 'ի գեհենին։
Հոգւոց հանէր խորոց սըրտին,
Եւ արտասուէր կողկողագին.
Բախէր ըզկուրծըս տըրտմագին,
Յողբս և 'ի կոծս անհնարին։
Խընդրէր ըղձամ պատերազմին,
Զի յաղթեսցէ իւր յաղթողին.
Իսկ որ յաղթեաց չար իշխանին,
Եւ ազատեաց զբանտեալս Նորին,
Լուաւ ձայնի աղաղակին,
Որպէս երբեմն աւազակին.
Շնորհեաց Թիկունս սպայապետին,
ԸզՄաղթազամ քաջն և արին։

Որ էր գըլուխ Վըրաց գընդին,
Սպանօղ Վասակայ ուրացողին.
Յաւեալ Գերող Վաղթագանին,
Խընդրէր զարիւնըն Վազգենին։
Զոր ուխտ եդեալ ընդ Վահանին,
Կացին մարտիւ դէմ արքային.
Նախ յԱրկուռի պատերազմեալ,
ԶՊարսիկս սըրոյ ճարակ տային։
Երեք հարիւր զօրականաւ,
Զեօթըն հազարս կոտորեցին.
Որպէս երբեմըն Գեդէօն,
Զբիւրըս բիւրուց այլասեռին։
Երկրորդ 'ի յԱրտազ գաւառին,
Զանօրինաց հոյլս հերքեցին.
Հանդերձ սուրբ Կաթուղիկոսաւն,
Սքանչելագործ Յօհաննիսին։
Զընդդիմամարտսըն վանեցին,
Որպէս Բարակ զզօրսն Յաբենին.
Յաղթական երգով պարէին,
Զի բարձրացաւ եղջիւր Խաչին։
Որպէս երբեմն հինն իսրայէլ,
Խմբկօք 'ի յելս կարմիր ծովին.

Ընդ Մովսէսի առաջնորդեալ,
Ուրք և կանոնայք կայքանէին։
Ուստ Հայրապետն գըլուխ կացեալ,
Հագուով մարմնով խրախանային.
Որքին եղև ուրախութիւն,
Ըղձացելոյ յանցաւորին։
Զի Վարդ եղբայրըն Վահանին,
Նկեալ 'դրանէ թագաւորին,
Զոր կապանօք կայր 'ի բանտին,
Նու զինուորացըն պահէին։
Լուծող նախնոյն Հօր Միածին,
Հրաշագործեաց առ պատանին,
Որպէս երբեմըն Պետրոսին,
Որ էր 'ի բանտըն Հերովդին։
Նա և 'ի յոյս ուրացողին,
Ընդունելով զդարձըն նորին,
Բազմաց լուեալ փառս տային,
Նու մխնեանց աւետէին։
Ածեալ 'ի միտ զլըրումն ուխտին,
ԸզՎահանայ Սպայապետին.
Զոր արտասուէր 'ի յաղօթելըն.
Զի տեսանէ զՎարդ ցանկալին։

Յետ այսորիկ կըրկին շարժեալ,
Պարսիկքն 'ի Վ_իրս արշաւէին.
Վ_աղթանգանայ դեսպանս յըղեալ,
Նիզակակցիլ Հայոց Ապաւին:
Խառնեալ ամբոխ կարաւանին,
Արագ 'ի կոչն ընթանային.
'Ճ'արամանու հովիտն իջեալ,
Յունաց զօրացն ախոյնէին:
Պարսիցն յայնկոյս գետոյն հասեալ,
Պատերազմել բաղձային.
Տեսեալ Վ_ահան Մամիկոնին,
Զի սուտ էր դաշն Յունաց Ազգին:
Յանդիմանեալ ըզՎ_աղթանգան,
Նա ըզգըրողս սուտ նամակին.
Իսկ նա պատճառ տայր այլ և այլ,
Մինչև 'ի յօրն եօթներորդին:
Տայր զարդարել զկոճեղս փայտից,
Խորան հարուլ բոլորովին.
Մերձ Վ_ըրաց հուրըս լուցանէր,
Ի գիշերի դէմ մեր գընդին:
Նա Վ_ահանայ պատգամս յղէր,
Ահա Յունաց զօրքըն հասին.

ՅԱղէկսանդրէ էր զայս ուսեալ,
Զոր նա արար ընդ Պորոսին։
Եւ յայսպէս զօրաց միտս թմբրթափեալ,
Մինչև Պարսիցն ըզգեստն անցին.
Բազումք Հայոց ուրացողաց,
Ապըստամբեալ յետըս կացին։
Յայնժամ Պարսից գըլխոհ տուեալ,
Հանդերձ նոքօք 'ի մարտ մըտին,
Պաղթագանայ թոյն և յուին,
Ընդպէտ զօրօքն զփախուստ առին։
Բաջ Մամիկոնըն զօրացեալ,
Որպէս զարծիւս 'ի ժամ որսին,
Յաղթեալ զօրացըն Պարսկային,
Մինչ խոյս տըւեալ ըզԿուրն անցին։
Յետըս դարձեալ որոնէին,
Զազգըն Հայոց միայն տեսին.
Ընդդրադարձեալ 'ի յըւազմին,
Բազում արանց պըսակ բերին։
Նախ ըզՎասակ զեղբայր վեհին;
Մահըն փոխեալ յանմահութիւն.
Երկրորդ Սահակ նահատակեալ.
Եւ այլք բազումք որ ոչ թըւին։

Նայէ վեղջայրըն Ներսէհին,
Հրահատ զՏէրըն Շիրակին,
Եւ ընդ նմա զԱզգ Արունեցին,
Զերրակալեալ ըմբռնեցին։
Կոչեալ զՄիհրան ՚ի յարքունիսն,
Ընծայ տանէր Թագաւորին.
Որով լալով և քըրձազգեստ,
Գընայր Ներսէհ ըզկնի նոցին։
Հասեալ ՚ի յԱւխարըն Մ քրապին,
Յիշեալ զտանջանս Լուսաւորչին,
Աղաղք թարձեալ առ նահատակն,
Օգնել նոցա ՚ի վտանգին։
Իսկոյն լուեալ սուրբըն Գրիգոր,
Բարեխօսեալ Տեառըն Փրկչին,
Հանեալ զկապեալըն Հըրահատ,
՚Ի միջոյ արանց շըրջափակին։
Դարձան եղբարքն ուրախութեամբ,
Փառս փըրկողին տուաքէին.
Իսկ զերանեալ զԱզգ Արունեցին,
Վ՟ան Յիսուսի գըլխատեցին։
Յետ վըճարման դառն աղետին,
Նայլ թի՞ երկուանք ջրապք պատեցին.

Զի դիւաշունչ ազգըն Վրաց,
Խելացնորեալ առ մեզ հասին։
Պատիր բանիւք շաղակրատեալ,
Զմիտըս կանանց մեղկացուցին,
Թէ կենդանի են արքըն ձեր,
Ըզմեզ առ ձեզ ուղարկեցին։
Ըստ օրինի արանց կանանց,
Նըշանացի բանս խօսէին.
Տեսիլըս սուտըս պատմէին,
Զոր ոչ երբեք տեսեալ նոցին։
Ասեն տեսեալ մեր կրօնաւորք,
ԶՍահակ զՎստակ 'ի յանապատին,
Վիրաւորեալ անհընարին,
Ընկեալ յերկիր թաւալէին։
Եղեալ տարան 'ի մենաստանն,
Եւ 'ի վէրացն ողջացուցին.
Փութով ըզմեզ առաքեցին,
Զի 'ի Պարսկեցն երկիւղ ունին։
Համբաւն եհաս յամենեսին,
Տեարք անկելոց ոչ ժուժէին.
Մանաւանդ կանանցըն եկեալ,
Դէմ Վահանայ արտասուէին։

Պատասխանեալ սպայապետին,
Թէ առասպել է խօսք նոցին.
Նախ քան զեղբօրն իմ բաժանիլն,
Գուշակեցաւ գալ՝ պլրակին:
Ինձէն տեսի զպայծառ պատկերն,
Լուսափայլեալ ըստ Մովսէսին·
Նա և Ներսէհ Կամսարականն,
Երդմամբ ասէր 'ի յատենին:
Բայց խափանել ոչ կարացին,
Զդառն արտասուս կանանց ազգին.
Մինչև զՄուշեխ Մամիկոնին,
Բազում զօրօք առաքեցին:
Ճիւաղաբնակ ազգըն Վըրաց,
Յոլով տեղիս շըրջեցուցին.
Արդ՝ զի՞ է իմ ընդ վայր յածիլ,
Եւ դեգերիլ զհետ անշահին:
Զի մինչ սոքա անդրէն դարձան,
Պարսիկքն ըղձայս 'ի բաց բարձին.
Ի գըրգըռելն Գուրիհոնին,
Չար ուրացող Արսականին:
Գիշերադնեաց 'Գըլխին հասին,
Շուրջանակի պաշարեցին.

Ընդ լուսանալ առաւօտին,
Մուսերամերկ խիզախէին։
Զև զանազան փոփոխէին,
Անհընարին տագնապէին.
Մինչև քաջացն 'ի դուրս եկեալ,
Հըսկայօրէն ճակատէին։
Զբազումս սըրով սատակեցին.
Այլ վճարել ոչ կարացին.
Թեթևընթաց սըլանային,
Յահ և յերկիւղ տեսանողին։
Գոռոզագոյն տեղի տային,
Կարծիս տալով կըրկին դարձին.
Հետամըտեալ Պարսից զընդին,
Մինչ 'ի Խաղտիսըն վարէին։
Իսկ Վահանայ արտասուելով,
Թիկունս կոչեալ ըզսուրբ Հոգին,
Զինեալ անուամբ Տեառն Յիսուսի,
Մըտեալ 'ի մէջ Լեգէովնին.
Առիւծաբար մռընչելով,
Աջն և ահեակըն ցըրուէին.
Որպէս զամբար 'ի չոր խոռիւս,
Դէմ և թիկունքըն խանձէին։

Մինն զհազարըս հալածէր,
Ըստ բարբառոյ մարգարէին.
Յորմէ յերկբայս է լըսողին,
Տըկար մըտացն անհընարին։
Այլ Աստուծոյ է այս դիւրին,
Երբ քաղցրանայ իւր ծառային.
Քանզի Վահան չորիւք տասամբք,
Յաղթեաց չորիցըն հազարին։
Սատակելով ըզՊիրիհոն,
ԸզՍիսակյանըն վիթխարին.
Եւ միւսանգամ երից տասամբք,
Յաղթեաց երիցըն հազարին։
Ոչ թէ յաղեղն էր յուսացեալ,
Եւ ոչ 'ի զօրութիւն բազկին.
Այլ 'ի յաղթօղն ամենայնի,
Եւ 'ի զօրութիւն սըրբոյ խաչին։
Տըկարացաւ հակառակորդն,
Զի խորտակեաց Տէր ըզնոսին.
Առաքելով 'ի փառըս Հօր,
Եւ անարգանս պատուաւորին։
Քանզի Պերոզ թագաւորին,
Պատերազմեալ ընդ Յեփթաղին,

Սրտեւաց երդմանն եղեալ ուխտին,
Անկեալ որդւովքն եօթանեքին։
Թէպէտ նորա զայս ասէին,
Զի զհաւաստին ոչ գիտէին.
Այլ իրաւունք դատաստանին,
Չարեաւն ըզ չարըն տուժէին։
Անմեղ արիւնք քրիստոնէից,
Ըստ Աբելի բողոք բարձին.
Եհաս յականջս Տեառն Աստուծոյ,
Վըրէժխընդիր եղև նոցին։
Զկուտեալ չարիսն ամբարըշտին,
Ի դէպ ժամու արկեալ զնովին.
Յաւուր վրիժուց գըթեալ ոտին,
Ջընջեալ զօրօք թագաւորին։
Առեալ ըզթագըն Վաղարշայ,
Եղբայր Պերոզայ արքային.
Գարնանաբեր հողմոյն հընչեալ,
Բուրաստանացըն՝ ծաղկէին։
Ձայն տատրակին մեզ աւետէր,
Ահաւասիկ ձըմեռն անցին.
Երամք թըռչնոց թափառնացեալ,
Իւրաքանչիւր տուն խընդրէին։

Զի Վահանայ հանդերձ գընդաւն,
'Վաղարշապատ քաղաքն եկին.
Հիմնարկեցին զԿաթուղիկէն,
ԶՊարսից քանդեալն նորոգեցին։
Մեծապայծառ շքեղութեամբ,
Գմբեթայարդ զարդարեցին.
Նաւակատիս կատարեցին,
Եւ արտասուօք զյատակս թացին։
Անդէն չուեալ 'ի Դուին եկին,
Այցելութեան ըսպասէին.
Իսկ խընամօղն ամենայնի,
Գըթաց 'ի դասս փոքու հօտին։
Զի զքաջութիւնըն Վահանու,
Միհրան ծանոյց Թագաւորին.
Յայնժամ ստուգեալ աւագանոյն,
ԶՆիխոր յըղեն 'խընդիր քաջին;
Եկեալ 'ի Հեր և Զարևանդ,
Ընդ միմեանց պատահէին.
Նոմոս բերեալ 'ի յարքայէն,
Առ 'ի գիտել զխընդիրս նորին։
Նիխոր կացեալ 'ի յերաշխի,
Երդահատէր զՄամիկոնին.

Տեսեալ ճոռոմ և ճարտասան,
Եւ անվեհեր զպատասխանին։
Իսկ մնացեալ ճիւն օրհնութեան,
Եղև խնդիր անմահ գանձին.
Ըստ հրամանի Կենարարին,
Զարքայութիւն հայցէր նախկին,
Պաշտել զօրէնսըն հայրենի,
Դաւանելով զանձն Եռակին.
Ընհետ առնել յազգէս Հայոց,
Զայն որ ասէ աստուած կրակին։
Թակտել զմեհեանս ուրացողաց,
Եւ 'ի փառաց ձըգել զնոսին.
Ընդ այս և զպէտս պակասութեան,
Նոանոյց Եկրեաց կուսակալին։
Նախ՝ անմիջնորդ դէմ յանդիման,
Խօսել 'նդ արքայից արքային.
Զի մի՛ միջնորդքն բանսարկութեամբք,
Խըռովեսցեն քան զառաջին։
Երկրորդ՝ առնել ընտրողութիւն,
Ըստ արժանոյն պատուել զնոսին.
Իրաւարար ճանաչելով,
Զլաւն և զվատթարն և զտոհմայինն։

Ըստ վաստակոյն հատուցանել,
Տիրասիրացն 'ւ ապերախտին.
Զայս ամենայն թէ կատարէք,
Շահիք ըղձայք 'ի ձեր մասին։
Յայնժամ Նիխոր խանդակաթեալ,
Կազմեաց ընթրիս Ճ'ենազնէին.
Նստեալ երկուցն 'ի մի բարձի,
Զմայլեցութեամբ խրախանային։
Մոխրապաշտիցն յամօթ եղեալ,
Զի յընթրիսէն արտաքսեցին.
Որպէս ըզշուն սովեալ հացէն,
Զգքաղաքաւըն շըրջէին։
Յիշեալ զինքեանց անմըտութիւն,
Վա՜յ և եղո՛ւկ անձանց տային.
Իսկ Վահանու հանդերձ գընդաւն,
Գնացեալ 'ի դուռըն Վաղարշին։
Արքայօրէն փառս ըզգեցոյց,
Ու կատարեաց զեղձըս սըրտին.
Տըւեալ զնախնեացն ըզմեծութիւն,
Ու ստրատելատ Հայոց սպային։
Դարձեալ անդրէն հրահոսակօք,
Ուրացողացըն խոյս տային.

Զարթեաւ առիւծըն սիգաձեւ,
Եւ ջուրց որդիքըն զօղէին։
　Կալեալ զփաղանգըս աղուէսուց,
Այգեստանեացըն ծաղկէին.
Ստեղնեալ բողբոջ գաւազանացն,
Երկուց ցեղիցն ի միասին.
　Բարձրացեալ եղջիւրք օծելոցն,
Հայրապետին և Արքային·
Արկեալ աթոռ դատաստանին,
Ի յարկըս Տեառն ըստ սաղմոսին։
　Կանգնեալ զկործանեալ աշտարակն,
Վերջինըս մեծ քան զառաջին.
Զի որ եհար վասըն յանցին,
Նոյն բըժըշկեաց ըզկնի դարձին։
　Որպէս երբեմըն զիսրայէլ,
Եւ զայլս բազումս որ կայ 'ի գրին.
Սըրկին կենօք կենդանացոյց,
Եւս առաւել քան զնոցին։
　Եւ այսքանեօք բարեգործեալ,
Մեզ երկնաւոր հայրըն վերին.
Մինչ զի տեսողքն հիանային,
Շարժեալ զգըլուխըս շըրջէին։

Զօր և Յօհան Մանդակունին,
Նոր երգս երգէր 'ի տաճարին.
Դարձոյց ըզսուգս յուրախութիւն,
Եւ պատառեաց զքուրձ խաւարին։
Սըրբեալ զարտօսր երեկոյին,
Սըգաթափեաց յառաւօտին.
Յարոյց զաղքատս և ըզտընանկս,
Նըստուցանել իշխան կըրկին։
Զայն գուժեցէ՛ք 'ի խանդացեալս,
Թէ կանգնեցաւ անկեալն յոտին.
Ահաւասիկ նոր նորոգեալ,
Պալհաւունի տունն առաջին։
Եւ ընդ նըմին գերազարդեալ,
Մամիկոնեան տունըն վերջին.
Թևակոխեալ 'ի յաստիճան,
Զթագ արքայից 'ի գլուխ եդին։
Թագաւորեալ ընդ դէմ չարին,
Քաջագանգուրըն Վահանին,
Մաքառ մանկանց ծերատածեալ,
Ի հրապարակըս խաղային։
Իւրաքանչիւր առեալ քընար,
Ըստ կանխասաց մարգարէին.

Փոքր էին այսպէս խրախճանային,
Որդիք ընդ հարսըն հըրճուէին։
Բնաւորական շարժեալ ախտին,
Որով մարմնոյն լուծեալ կապին.
Եւ որոգայթ փըշրեալ սըրտին,
Որպէս ճըճղուկ ապրեալ ոգլին։
*ատերն յերկրի թողեալ զնիւթն,
Առ սկըզբնատիպն եհաս յերկլին.
Գանձըն գանձեալ 'ի տուն տուօղին,
Ունայն մնացեալ անօթ խեցին։
Այլ ըստ բանին Սողոմոնի,
Եկաց անշարժ շէնք քաղաքին.
Եղբայր 'ի յեղբօրէ օգնեալ,
Ամուր պարիսպ մեզ լինէին։
Յետ Վահանայ՝ Վարդ պատրըկին՝
Նըստեալ յաթոռ իւր հոմածնին.

---

(*) Յօրինակին պակասէր աստ գլխատառն բառիս, զորպիսին 'ի սկզբան իւրաքանչիւր տանց վիպասութեանս՝ կարմրադեղով ունէր գրեալ։ Զայս դժուարացաք մեք գտանել. ուստի յաւելաք զսոյն այս ծանօթութիւն։

Սակաւ ամօք յամեալ 'ի նմին,
Ապա մանրեալ լար ածաթին։
Եւ ընկըրկեալ անիւն 'ի գուբ,
Վըճարելով գյոլով գնացին.
Զկնի Պարսիկ Մարզպանք եկին,
Մինչ 'ի Վարդան Մամիկոնին։
Այն՝ որ եսպան զՍուրէն մարզպան,
Եւ փախըստեայ գընաց Յունին.
Պատուեալ 'ի Յուստինիանոսէ,
Զօրօք բազմօք գայ 'ի Դըւին։
Սաստկացուցեալ զճակատ մարտին,
Իսպառ պարտեալ զօրքն Եղամին.
Անուշըռուան արքայն Խոսրով,
Զերծեալ փըղօք ընդ ամբոխին։
Վէսքն 'ի զօրաց փախըստէից,
Առ Եփրատաւն ամրանային.
Ըզճողոպրեալսն 'ի սուսերէն,
Ջուրըն հեղձոյց ըստ Փըրատին։
Եւ զպաշտելիսն Մովպետանեաւն,
Ըզգարնոտի յոյսըն նոցին.
Զոր կարծէր խոցեալ արքայն,
Ըստ կորըստեան մեծ չաստուծոյն։

Եդեալ 'ի բաց զբարս բարութեան,
Դու բորբոքեաց ըզհուր ռազմին.
Ասէ՝ թէ հայր էի երկրի,
Եւ սընուցիչ ամենայնի։
Այսուհետև յապստամբաց,
Խընդրէ աստուած զմահ անմեղին.
Այքան էր յոյս կըռապաշտին,
Յամօթ կեղծիւք քրիստոնէին։
Որ և նախ՝քան զմերձ վախճանին,
Մերկըրտեցաւ 'ի սենեկին,
Դաւանելով զՆորոգութիւնն,
Հաղորդեցաւ երանելին։
Գըրսակակից եղև նոցա,
Որք յետին ժամն յայգին գնացին.
Բարձեալ զմարմին քրիստոնէից,
Օրհներգութեամբ 'շիրիմս եդին։
Թագաւորէ Որմիզդ որդին,
Ոչ հետևեալ հօրըն կրօնին։
Արդ կարծողեալ յայս տուայտիմ,
Եւ 'ի նըւագըն նըկըրտիմ։
Ո՜վ երկակի է պողոտայն,
Յոր կըթոտեալ ոտիւքս հըպիմ.

Այլ և Բ. բարձեալ բեռին,
Կամիմ տանել ՚ի միասին։
Յորմէ ՚ի տեսըն դըժուարիմ,
Եւ ՚ի յիշելըն լըքանիմ.
Այլ փափաքումն ոգւոյս բնածին,
Ստիպէ քան զկարն իմ ցաւածին։
Եւ զըթութեան ձիրն երկնային,
Համարձակ է ՚ի գրել բանին,
Ծանուցանել հըմտասիրին,
Զանցեալըն ՚ի գործ պատահարին։
Զթագաւորացն երկու ազգին,
ԶՄամիկոնեանց և զԵըլամին.
Մանաւանդ ըզՍասանականս,
Որք զտիեզերս բոցացուցին։
Ո՛չ թէ միայն զհաւատս Խաչելոյն,
Այլ և զինքեանց ձեռնարկեցին.
Վասնզի Որմիզդ փոռող՝ մոլին,
Ըզնախարարս եբարձ բնաւին։
Նաև ըզտոհմըն Պալհաւին,
Զեղբօր մերոյ Լուսաւորչին.
Զոր դայեկացն ապրեցուցեալ,
Ի կոտորածէ Խոսրովին։

Զ՚Պալհաւ որդի չար Արշակին,
Եւ Արտաշիր արքայն ածին.
Եւ նա հատոյց զվարձ վաստակին,
Պատուեալ զորդի մահապարտին։
Տալով նմա ըզգահն երկրորդ,
Ըզ Բ՚ալհ քաղաքն Առաւատին.
Խառնեալ ՚ի ցեղըն Սասանին,
Խընամութեամբ ՚ի Ստահրացին։
Մինչև ցՈ՚րմիզդ ազգն աճեցին.
Ապա զցասման մըրրուրն արբին.
Կապեալ զՎ՚ընդոն Պալհաւունին,
Ի Պ՚ըրրուընդակ եղեալ դղեկին։
Եւ զայլս բազումս նախարարացն,
Մաշեաց սըրով զերթ զթըշնամին.
Նաև զՎ՚ահրամըն Մեհևանդ,
Զ՚զարմն Եմրանայ զսերմըն Բալհին։
Զ՚առիւծադէմ անպարտելին,
Սպանօղ Մազքըլթաց արքային.
Կամէր մըծրել հուր Սասանին,
Լ՚իզել զարմատն Արտաւանին։
Պատճառելով զգանձն արքային,
Զ՚որ դըրեցի վերոյ նորին,

Յորմէ զօրացն 'ի բաց կացեալ,
ԶՎահրամ արքայ պըսակեցին։
Յարևելից դիմեալ 'Տիզըոն,
Առ 'ի բառնալ զտուն Սասանին.
Լըւեալ Որմիզդ զաղմուկ իւրին,
Ակըսաւ հօգալ զկազմ ըռազմին։
Նախարարացն միաբանեալ,
Զքէնն առաջին 'ի միտ ածին.
Ի Գըրրուանդէ զՎընդոն հանին,
Նովաւ զՈրմիզդ սատակեցին։
Առեալ Վընդոն զքըւերորդին,
ԶԽոսրով ծընունդ Թագաւորին,
Առ արքայն Մուրիկ փախուցին,
Ի կայսերէն երդումն առին։
Բզզօրս Յունաց և զՀայկազնին,
Տըւեալ 'ի ձեռըն Խոսրովին.
Լըւեալ Վահրամ Մեհևանդին,
Զնիզակակցիլըն Մուշեղին.
Որ է 'ի բաց կալ 'նոցանէ,
Խառնիլ 'ի գունդ Պալհաւունին.
Թէպէտ ջանայր Մուշեղն արին,
Այլ նախարարքն յանձն ոչ առին։

Ապա յանդուգն յարձակեցին,
Եւ ըզմիմեանըս բախէին.
Խըմբեալ ճակատ տարուբերին,
Վըտակ արեանցըն խաղային։
Զի ոչ թէ կողմէր որ յաղթէր,
Կամ զհակառակն կըրել նորին.
Այլ քաջ քաջի հանդիպէին,
Եւ յերկարէր գործըն նոցին։
Վահրամ վառէր զերամն փըղին,
Տայր առաթուր զզօրս Խոսրովին.
Մինչև տիրել քաջ Նըսեմին,
Ոչ դադարէր զգործ աղէտին։
Բզկնի պարտեալ Մեհևանդին,
Ձ՚եպեալ ՚ի Բահ դարանէին.
Իսկ Յապրըւէզըն զօրացեալ,
Կորզեալ ՚ի յինքն ըզհայրենին։
Այլ և ըզգանձըն Մազքըթաց,
Զառ ի Վահրամէ աւարին,
Անասնըն բախտից տիրեալ,
Մանուկ Խոսրով ՚ի վարկենին։
Բազմեալ զերընջոյս երախանին,
Յետ վանելոյ ըզթըշնամին,

Յորմէ զօրացն ՚ի բաց կացեալ,
ԶՎահրամ արքայ պըսակեցին։
Յարեւելից դիմեալ ՚Տիզբոն,
Առ ՚ի բառնալ զտունն Սասանին.
Լուեալ Որմիզդ զաղմուկ իւրին,
Սկըսաւ հոգալ զկազմ ըռազմին։
Նախարարացն միաբանեալ,
Զքէնն առաջին ՚ի միտ ածին.
Ի Դըրըուանդէ զՎընդոհ հանին,
Նովաւ զՈրմիզդ սատակեցին։
Առեալ Վընդոհ զքըւերորդին,
Զխոսրով ծընունդ թագաւորին,
Առ արքայն Մուրիկ փախուցին,
Ի կայսերըն երդումն առին։
Ըզզօրս Յունաց եւ զՀայկազնին,
Տըւեալ ՚ի ձեռըն խոսրովին.
Լըւեալ Վահրամ Մեհեւանդին,
Զնիզակակցիլըն Մուշեղին.
Որ է ՚ի բաց կալ ՚նոցանէ,
Խառնիլ ՚ի գունդ Պալհաւունին.
Թէպէտ ջանայր Մուշեղն արին,
Այլ նախարարքըն յանձն ոչ առին։

Ապա յանդուգն յարձակեցին,
Եւ ըզմիմեանըս բախէին.
Խորմբեալ ճակատ տարուբերին,
Վըտակ արեանցըն խաղային։
Զի ոչ թէ կողմէր որ յաղթէր,
Կամ զհակառակն կըրբել նորին.
Այլ քաջ քաջէ հանդիպէին,
Եւ յերկարէր գործըն նոցին։
Վահրամ վառէր զերամս փըղին,
Տայր առաւթուր զզօրս Խոսրովին.
Մինչև տիրել քաջ Նըսեմին,
Ոչ դադարէր զգործ աղէտին։
Բըզկնի պարտեալ Մեհևանդին,
Դ՛եպեալ 'ի Բալհ դարանէին.
Իսկ Յապըրըւէզըն զօրացեալ,
Կորզեալ 'ի յինքն ըզհայրենին։
Այլ և ըզգանձըն Մազքըրթայ,
Զառ ի Վահրամէ աւարին,
Անասելի բախտից տիրեալ,
Մանուկ Խոսրով 'ի վարկենին։
Բազմեալ զխընջոյս երախանին,
Յետ վանելոյ ըզթըշնամին,

Ի գինարբուս խրախանալով,
Առնէր զերգս ընդ որերին:
Եթէ իցէ երբէք լուեալ,
Զոր ինձ արար արքայն Յունին.
Զի զթըշնամին թագադարդեաց,
Իբրև զորդի իւր հոմածին:
Ըստէպ ըստէպ կանգնէր յոտին,
Ոսկի նըւագն 'ի դաստակին,
Շնորհակալեալ ըզկայսերէն,
Եւ պագանէր երկիր նըմին:
Բացագըլխով ըմպէր զբաժակն,
Յողջոյն Մուրիկ թագաւորին.
Հրաման տըւեալ աւագանոյն,
Ընծայատար լինիլ նըմին:
Ազգն անիծեալ և Պարսկային,
Ըզմուշեղէ բանսարկեցին.
Թէ աւերեաց զգանձն արքունի,
Զինչս և զխորանըն Վահրամին:
Եւ ապրեցոյց զապըստամբեալսն,
Տալ երիվարս և զէնս նոցին:
Յայնժամ յըղեալ ըզսուրհանդակն,
Կոչել զՄուշեղն Մամիկոնին:

Մինչդեռ առնէր հանդէս զընդդին,
Նա 'ի գիտել զԹիւ մեռածին;
Բերեալ զնամակն 'ի ձեռն եղին՝
Գ՚ալ 'ի կոչումըն խոստովին:
Իսկ պահապանն ամենայնի՝
Յիսուս Քրիստոս Հայր Միածինն,
Եհաս 'Թիկունս զօրավարին,
Խնամարկելով ըզգլուխ հօտին:
Ըզգեալ 'ի միտըն Մուշեղին,
Երկուս լինել զպատճառ կոչին,
Կամ ըզվարձըն պատերազմին,
Կամ Թէ՝ հասեալ է Հէն կըրկին:
Վառեալ ըզգունդս զօրավարին,
Երկու հազար զքաջն և զարին,
Մօտեալ 'ի բանակն արքային,
Փըշտիպանացն 'ի դէմ ելին:
Ըստ հրամանաց Թագաւորին,
Զ՚Մուշեղ միայն մեծարեցին;
Մերձեալ 'ի դուռն մաշկապերճին,
Հրամայեցաւ առնուլ զինին:
Իսկ նա պատեալ բարապանացն,
Ձայնեաց փութալ սպառազինին.

Աշտանակեալ 'ի յերիվարն,
Բուռն հարեալ ըզսուսերին,
Մինչ Թագաւորն ելեալ ինքնին,
Աիրով կոչէր 'ի պա[illegible]ատին.
Այլ սպարապետն յիւրսըն դարձեալ,
Կալեալ զոմն 'ի յազգէ Պարսկին:
Սաստիկ տանջեաց ըզփըշտիպանն,
Մինչև յայտնեաց ըզհաւաստին.
Առեալ տարաւ զնա առ Յօհան
Զօրագլուխ Յունաց սպային:
Արկին ասաց հրապարակին,
Սպանման խորհուրդըն Մուշեղին.
Յայնժամ կազմեալ խոյր մի ակնիւ՝
Ոսկի յեռեալ ընդ զըմրըխտին,
Պատրաստեցաւ Մուշեղ 'ի գնալ,
Ամբաստանել զիւրս կայսերին:
Իսկոյն լուեալ Խոսրով զեղեալն,
Գունդս արձակեաց ըզկնի նորին,
Առ 'ի կործանել զասպետն,
Թաքուցանել զլուր աղէտին.
Ոմանց յայտնեալ զայս Պատրըկին,
Հետազօտել զ[illegible] նոցին,

Ոչ վըրիպեալ յաջողմանէն,
Զդարանամուտս սատակեցին.
Մեծաւ փառօք 'ի յըՍտամպօլ,
Մըտեալ Մուշեղ Մամիկոնին.
Նա յանդիման եղեալ կայսերն,
Բայց ոչ լուաւ զիւր ընձայէն.
Խաղաղարար արքայն Մօրիկ,
Խաղաղացոյց զգործ աղմըկին։
Որով սաստեալ նենգժոտ Պարսկին,
Խիստ քամահանս թագաւորին.
Թէ ոչ կացցէ յեղեալ ուխտին,
Սըտըրկութիւնս տեսցէ կըր'կին։
Իսկ Ապըրվէզն յամօթ եղեալ,
Կոչեալ ըզզօրս երկու ցեղին,
Զհայք և զՊամիրք 'ի միասին,
Պանձիւ լըցոյց զամենեսին։
Նա հըրապարակ եղև կայսերն,
Զօրէն որդւոյ լըսօղ խըրատին.
Հաստատեցաւ արքայութիւնն,
Դըրեալ 'ի գահըն հայրենին։
Բարեբախտիկ բարգաւաճեալ,
Պան զթագաւորս հանրականին.

Ըստ օրինացըն մոգութեան,
Բազում ունէր հարճս և տիկին։
Այլ 'ւ գլխաւոր է Թագուհի,
Էր 'Յակոբկաց անուն Շիրին.
Այս բարեպաշտ կինս երկիւղած,
Զկատարելոց բերէր յանձին։
Մարգելով զարքայն ըստ իւր կրօնին,
Մինչ հալածէր զդասս մոգին.
Եւ ամ յամէ 'տօնի Զատկին,
Կոչէր զպաշտօնեայս սուրբ ուխտին։
Զոր էր շինեալ մերձ պալատին,
Աստուածասէր մեծ Թագուհին,
Առեալ Աւետարան և խաչ,
Եկեալ զտիկինն հաղորդէին։
Պարգևըս տայր նոցա արքայն,
Եւ արձակէր յիւրեանց տեղին.
Յայս ժամանակս յայտնեալ մարմին՝
Դանիէլի Մարգարէին։
Որ էր եդեալ 'ի տուն գանձին,
Ի յԱսպահան մեծ քաղաքին.
Լըւեալ Մօրկայ բարեպաշտին,
Խնդրեալ ըզմարգարիտն անգին։

Տըւեալ ըզգանձըս մարմնական,
Իդին հոգւոյ զարդարողին.
Իսկ քաջայոյս մեծ Թագուհին,
Ընկեալ 'ի յոտըս Խոսրովին,
Ի յարքայէ պարգև մասին,
Հայցէր շնորհել իւրոյ ուխտին.
Իբրև ետես անհընարին,
Լինել դըժկամայ կայսերին.
Ապաւինեալ 'ի սուրբ Հոգին,
Նոմ ետ կարդալ իւրոյ Ազգին:
Իսկ որ առնէ զկամս ծառային,
Յիսուս Քրիստոս Հաւր միածին,
Լըւաւ ձայնի աղաղակին,
Փառաւորեաց զիւր սիրելին.
Քանզի յորժամ զկառս լըծեցին,
Իքաղաքէն 'ի դուրս ելին,
Զորիքն անդէն ըզկայ առին,
Գետք և աղբեւրք ոչ հոսէին.
Իսկ քրիստոնեայքն և Թագուհին՝
Աղիողորմ արտասուէին:
Ըզսուրբ մարմինն աղաչէին,
Զի մի՛ գնասցէ յերկրէ նոցին.

Յանկարծակի ջորեացն ելեալ,
Թեթևընթաց 'ի Ռօշ մըտին։
Գետք և աղբիւրք արձակէին,
Եւ 'ի գընացըս յորդէին.
Հեթանոսացըն զայս տեսեալ,
Զահի հարեալ հիանային։
Մեծ է աստուածն քրիստոնէից,
Եւ մեծահըրաշ գնա ասէին.
Նա և մոգուցն հաւատացեալ,
Յայտնի եկեալ մըկըրտէին։
Բազումք զարիւնս իւրեանց հեղեալ,
Ի Քրիստոսէ պըսակէին.
Գնացականք կայսերըն ունայն դարձեալ,
Ինքնակալին զհըրաշս պատմէին։
Զոր հիացեալ փառըս տուեալ,
Ընծայ յըղեալ սուրբ նըշխարին,
Պատեալ ոսկւով մեծ դըշխոյին,
Եդեալ 'ի յիւր սուրբ տաճարին։
Յետ այսր մեծի ուրախութեան.
Այլ իմն աղէտ դ[illegible]այք պատէին.
Ի սաղըրեկոյն բելիարայ,
Մուրիկ կամէր ջընջել բնաւին։

Տայր հաւաքել զամենեսին,
Եւ աքսորել յերկիր սորին.
Ի վատածինըն Թրակիայ,
Գումարելով դէմ Բուլղարին։
Նախարարացն զգուժն լըւեալ,
Առ Ապըրվէզըն դիմէին.
Իսկ Խոսրովու ուրախացեալ,
Գանձս առաքէ ռոճիկ նոցին։
Տեսեալ 'ի ձեռն համակարին՝
Ասպուրական մեծ իշխանին.
Եկեալ 'ի յԱտըրպատական,
Ընդ առ միմեանս պատահէին։
Բայց զի՞ է իմ գրել զառականս,
Յայտնել զամօթն իմոյս Ազգին.
Եւ ընդ օտարըս ծիծաղել,
Զար համբաւել զանուն ծնօղին։
Սամ դատաստան է 'ի կորուստ,
Ըստ առակաց Սողոմոնին.
Այլ և պարտական զեհենոյն,
Ընդ բամբասողս զեղջօր յանցին։
Յորմէ զաստէն ծըլխոյ ցընդիմ,
Թէ զի՞նչ առնեմ տարակուսին.

Զի 'ի գըրկելըն ըղձաւորին,
Եւ 'ի թողուլն ծանակ լինիմ։
Մանաւանդ 'ի յայս հարկիմ,
Զի զպատմագիրս տաղել կամիմ.
Եւ թէ անտես առնեմ ըզկարգն,
Ի յիմաստնոցն տըրգէտ հեգնիմ։
Վասն այսմ իրի շարամանեմ,
Զլաւս և զվատթարըս ճառագրեմ,
Զանմըտութիւն Վահեւունեաց,
Զոր արարին Համակարին,
Քանզի յորժամ զգանձըն տեսին,
Ապըստամբեալ աւար հարին.
Զի ախտաւորըն խոշտանկեալ,
Պարգևս զորևըն բաշխեցին։
Եւ սըրիկայքըն վեցեքին,
Զըւեալ 'ի ճահուկ բանակին.
Վահեւունիք՝ Տըրպատունիք,
Մամիկոնեանք և Արւնեցիք,
Ամատունիք՝ Խորխոռունիք,
Սըրկին ըզՀայք տոչորեցին.
Մերկ կողոպուտ գունդն արքային,
Ի դուռն երթեալ բողոքէին։

Արդարացաւ բան կայսերին,
Զոր առ Խոսրով գրեաց նախկին.
Ոչ է ազգ Հայոց ազգ է չնչին,
Վըսմոս՝ ջորաբան 'մերում միջին:
Այլ թէ կամիս զմերս հաշտութիւն,
Ընտրին 'ի բաց բարձցուք զնոսին.
Զոր ոչ լուեալ բարբարոյն,
Մինչև փորձիւ 'ի գլուխ ելին:
Այս ազգէ զեղեալս կայսերն,
Եւ զօրս խնդրէ 'Թիկունս ինքնին.
Եկեալ Հերակլ զօրավարին,
Սիզակակցեալ Համակարին,
Ըզ Սախջաւան գումարքին,
Եւ պատերազմ յարդարէին.
Զոր զանգիտեալ ապըստամբաց,
Ի միմեանց բաժանէին:
Սէպք 'ի հնազանդութիւն եկեալ,
Այլք 'ի Սորդիս ամրանային.
Աճապարեալ ըմբռնեցին,
Պարնոյ քաղաք գըլխատեցին:
Այսուհետև թերուղեղ լեալ՝
Ընդ Հայք՝ երկուց թագաւորին.

Մի՛շտ արան ընտիրս մխտեղէին,
Դէ՛մ թըշնամեաց առաքէին։
Ընդ որ և զՄուշեղ Մամիկոնին,
Ի Բուլղարաց ձեռս մատնեցին.
Տեսեալ Սըմբատ Բագրատունին,
Զի ջախջախեալ եղեգնէին։
Կոչեալ առ ինքն զնեպուհս ազգին,
Միաբանեալ վտարանջեցին,
Յակս Հայրենեացն զմահ յանձն առին,
Քան թէ յոչինչս մեռանիցին։
Ոմանք ՚ի միաբանելոցն,
Ստակօրէն ախտանային.
Տարեա՛լ զշունչն յունկըն Մուրկայ,
Զարքայն ցասմամբ զայրացուցին։
Կոչեալ զՍըմբատ Բագրատունին,
Հանդերձ արամբ եօթանեքին,
Ի բազմամբոխ հրապարակին,
Չըգել ՚Կօնիկին վըճիռ հատին։
Մերկացուցեալ զերանելին,
Նուր գազանացն արկանէին,
Զայրըն հեթեթ և խեցէմորթ,
Զնորին Ռ.քիլլոս և զՀռողացին։

Զերկրորդ Հերակլն անյաղթելին,
Զենոն հսկայն զՍամսոն արին,
Որ յլ տուեալ քան ըզնաւին,
Զնըման հաւուն իւրոյ Պուեթին:
Զորքայակերպն և զցանկալին,
Զմատաղատունկն Աբրայեցին.
Նախ ըզզուարակն արձակեցին,
Որ 'ի զըօսանս մեծ քաղաքին:
Վարժեալ հոգին այրն Աստուծոյ,
Որպէս երբեմն առ ամլածին,
Աղաղակեալ ձայնիւ ուժգին,
Մինչ զարհուրեալ ցուլըն մոլին:
Կալեալ ըզգըլուխըն հըզօրին,
Գեղեալ զեղջիւրս մանրեաց զնասին.
Յոգնեալ 'ի մարտըն պաճարին,
Իառաջ բարձեալ 'ի փախըստին:
Հետամըտեալ քաջըն և արին,
Իուռըն հարեալ 'ի կճղակին,
Արտաքս ոստեալ ոսկըրն 'ի ձեռին,
Գնայր թոկ և կաղ_ ողորմագին:
Երկրորդ անգամ զարջըն արձակեալ,
Որ 'ի ծախել զարմատն Յեսսին.

Իսկ Արմբատայ դէմ գընացեալ,
Եւ հար բըռամբ 'ի ճակատին։
  Յատակելով շամչի գազանն,
Զօրէն Դաւթի Մարգարէին.
Երրորդ անգամ թողեալ զառիւծն,
Զի յաղթեսցէ զանյաղթելին։
  Իսկ բանական առիւծն եկեալ՝
Մենամարտել ընդ անբանին,
Ըստ օրհնութեան նահապետին,
Կացեալ կորիւնն յասպարիսին։
  Հըզօր առիւծն 'ի Յուդայէ,
Մըռընչելով չար գազանին,
Մարմնով փանեաց զերկուեալն,
Հոգւով զոսոխն իմանալին։
  Ձեռօք կարկեաց զգոռ վատթարին,
Եւ թուն մըտօք զգօշ վիշապին.
Յորմէ բարբառ բազմամբոխին,
Զ Բիւզանդիայ դըղըրդեցին։
  Դիմեալ բամիցն 'ի պաղատին,
Խիտ ըզմիմեանց հետ կռուէին.
Ընկեալ 'ի յոտս պիղծ արքային,
Ողորմիլ առըն հայցէին։

Նա և բամբիշ մեծ թագուհին,
Մաղթէր շնորհել կեանս Սմբատին.
Քանզի սիրէր զչքնաղագեղն,
Զի որդեգիր էր դշխոյին։
Հաճեցուցեալ զկամս արքային,
Հրամայեցաւ պատուել զնաքն.
Տարեալ զըմբիշն 'ի բաղանիսն,
Զգեղեցկագեղն լուանային։
Բերեալ զհանդերձ արքունական,
Զմատաղ մանկունս զարդարեցին.
Ածեալ զնոսա առ թագաւորն,
Ըստ սիրելւոյ դարմանէին։
Հիւհըրաչ համբաւն ելեալ,
Ամենեքեան 'ի տես գային.
Մանաւանդ ընդել զօրացն,
Որք քաջութեան տեղեակ էին։
Նախ քան զվերջինս 'ի յԱստամպօլ,
Յայլում վայրի հիանային.
Զի յաղթանդամ մոլեգնեալ ձին,
Ոտօք վերացուցեալ քաջին,
Զձեռըն ձըգեալ 'ի յոստս ծառին,
Ուժգին պընդեալ զմէջս անասնին.

Արծկեալ ըղձովանդակ իրանս,
Յաղթէր հըսկայն երիվարին։
Տեսեալ զօրացըն զարմանայր,
Եւ ընկենոյր զզէնս թըշնամին։
Ուա՜ղ ձեզ Հա՛յք՝ բիւր և կըրկին,
Զի ամենի եղայք յետին։
Զըրկեալ արանցն առաքինեաց,
Որք հաւատոյ վահան էին.
Խարձեալ ըզգլուխն յառոյգ մարմնոյն,
Եւ անխըռնայ յօշատէ՛ն։
Փոխան որդւոյ յանցաւորին,
Ըզհայրն անմեղ խոցոտէին.
Մարդախոշոշ ազգըն Յունին,
Զօրէն գայլոյ կարկափէին։
Շըրջափակեալ նախ ըզհովիւն,
Զի անտէրունջ լիցի հօտին.
Թէպէտ մանրեաց զժանիս նոցին,
Այլ կեղերլոյ ոչ լըռէին։
Նըման ազգաց տիրասպանին,
Նախ պատուէին 'ւ ապա հարբին.
Եդեալ 'ի նաւ զԽազրատունին,
Ի յԱփրիկէ աքսորեցին։

Այլ Արարիչն արարածոց,
Որ ներգործէ զկեանն ամենի,
Բազմապատիկ ողորմութեամբ,
Եղև պահապան պանդխտին։
Մըտեալ 'ի նաւըն ծառային,
Եւ ուղեկցեալ բարեպաշտին.
Թէպէտ գնացեալ 'ի մէջ ստուերքին,
Այլ ոչ յամեալ 'ի Բաղհոնին։
Նաւեալ պայծառ լուսոյ արփին,
Եւ փարատեալ աղջամղջին,
Եւ թէ ըզմի դուռըն փակեաց,
Զհազարն եբաց ըստ առակին։
Զի յաջողմամբ ճանապարհին,
Սըմբատ եհաս յիւր հայրենին.
Հաճոյացեալ յաչս Խոսրովու,
Պարսից արքայից արքային։
Լըցոյց ոսկւով և արծաթով,
Կարգեալ Մարզպան Վըրկանին.
Շինեաց զտաճարըն Գըրիգորի,
Յարքայանիստ մեծն 'ի Դըւին։
Յորմէ զչարեալ բերդակալըն,
Ամբաստանեալ Ապըրվէզին,

Ո՛է քան զկըլայս բարձրացուին,
Դիւրաւ յաղթէ մեզ թըշնամին։
Հրաման հասեալ 'ի յարքայէն,
Լինել զտաճարն՝ քակել բերդին.
Այնպէս սիրէր զքաջըն Արմբաս,
Յամօթ Յունաց նենգժոտ ազգին։
Բազում արար սա ուղղութիւն,
Պայծառացոյց զկարգ օրինին.
Եդեալ յաթոռ Լուսաւորչին,
Զ Տէր Աբրահամ ըՄըշտունին։
Յետ այսորիկ սպառազինեալ,
Հարեալ զճակատըն Վռուշանին,
Մենամարտեալ ընդ Հեփթաղին,
Հըսկայազուն քաջ մըրցողին։
Եղեալ 'ի դէմ ախոյեանին,
Որպէս Տըրդատ դէմ Հըրչէին,
Զիք առ փրեարս արշաւէին,
Մեծ տագնապաւ հարկանէին։
Յաղթահարելն էր անհնարին,
Զի կուռն և թանձր կր պըղընձին.
Այլ 'ի վերուստ իմն օգնութիւն,
Հասեալ 'թիկունս մեր Արմբասին։

Րամփրեալ զնիզակն յոյժ ահագին,
Լուծեալ զվերտամուտ Բալհիկ զրահին.
Յուրտ անկանէր դի վիրագին,
Որպէս երբեմն Գեդուէհանին։
Զզօրսն ամենայն ՚փախուստ արկեալ՝
Մինչև ՚ի Բալհ և Տոխորքն,.
Յայնժամ հրեշտակ աւետաւոր,
Եկեալ պատմէր՝ մեծ արքային;
Լուեալ Խոսրով զլուր յաղթութեան,
Զուարթանայր գեղ պատկերին.
Տայր զարդարել փիղ մի ազնիւ,
Պատուել զորդի ախոյեանին;
Բերեալ ՚ի դահլիճն արքունի,
ԶՄարգարտերոց ՚ի վեր հանին.
Գանձ ցրրուելով անթիւ ռամկին,
Զգուրս և զփողոցս զարդարեցին։
Ապա գրէ թուղթ ողջունի,
Եւ առաքէ նըժոյգ նըմին,
Գալ հրամայէ ՚ի պալատին,
Ուրախանալ ընդ արքային։
Այլ և գրեմ բանասիրքն,
Զվրէժ խնդրելըն Խոսրովին.

Վասըն մահուան հօրն Որմըզդին,
Մատնեալ մահու զսպանողս նորին.
Նախ զատեցաւ Վընդոն քեռին,
Զոր ասացի 'ի գլուխ ճառին.
Կալեալ եսպան զերէց եղբայրն,
Արքեալ կըրսերն 'ի Գեղմային.
Նուաճեալ ընդ Հաւկն և զՊարիաւքն,
Ըզ Թագաւորս Քուշաց ազգին,
Ընթիւ զօրօք գայր 'ի Տիզբոն,
Եւ 'ի սպանել զքըւերորդին.
Գարամ գործեալ 'ի ճանապարհ,
Պարխովկայ նենգաւորին.
Եանձնացոյց զարքայն Վըռզդամ.
Տիրադաւեաց ըստ Եմաւկին.
Ոմանք զօրաց Հայկազնէից,
Ի յայս կըռուս մեռանէին.
Եւր մի անուն Յովսէփ կոչիւր,
Տեսիլք ետես 'ի գիշերին.
Երեք ամսով յառաջագոյն
Քան զկոտորիլն Հայոց գընդին,
Իջեալ առ նա սուրբ Հրեշտակին,
Եցոյց զընեալ կըռուոյ տեղին.

Գտանիցես այր մի սպիտակ,
՚Ի մէջ անկելոց դիակուտին.
Տեսանիցես ներքոյ ուխտին,
Մասն ինչ ՚ի կենսատու փայտէն։
Յետ լինելոյ պատերազմին,
Եկեալ ՚ի մտօքն Յովսեփին,
Գընացեալ գըտաւ ըստ նըշանին,
Զներկեալն արեամբ Տեառն Յիսուսին։
Բերեալ պարգեւս տայ Սըմբատայ.
Յորում կըրկնէ ծունըր նըմին.
Կընքեալ նովաւ զդէմս պատկերին,
Եւ տայր դընել ՚ի տաճարին։
Յետ այսորիկ ծաղկեալ ալեօք,
Ըստ նախահօրն Աբրահամին,
Վախճանեցաւ յերկիր օտար,
Որպէս Յակոբ ՚ի Գեսեմին։
Հրամայեցաւ ՚ի յարքայէն,
Բերել զմարմինն ՚ի հայրենին։
Եդեալ ՚ի բնիկ գեղն ՚ի Գառնա,
Որ է յերկիրըն Կոգովտին։
Արդ ըստ բանի մարգարէին,
Յերկնից անկեալ արուսեկին,

Ա՛յն՝ որ ծաղկէր ընդ առաւօտս,
Եւ յօրանայր երկիր նովին.
Այսուհետեւ շփոթումն եղեալ,
Ի մէջ երկուց թագաւորին,
Տունքն Յունաց իբրեւ զեղէգն,
Եւ հուր խանձող տուն Սասանին.
Անծրեւեալ այրեաց բոլորովին,
Որ ոչ մնացեալ կրակարաներին,
Բակեալ ըղձոյնըն հրապարակին,
Զոր յաստեղաց եդեալ միջին.
Այր իջուցեալ ՚ի յանձաւէն,
Զբարձրաբերձնակ յերկիր արդոյն.
Սաստեալ փափուկ օրիորդին,
Չիք քեզ աթոռ նիստ ՚ի գետին.
Համգըրջելով բառօքըն,
Յայտնեալ զամծթն ընդ կրընկին,
Որպէս երբեմն զԱրաբեացին,
Զոր գուշակեաց Ամովսածինն.
Եւ ընդ նմա զՆինուէացին՝
Ձեռներ Նաւում Եղկեսածին.
Զոր իմ առեալ վկայ բանին,
Յորըս և քըքուանս Յունականին.

Բազմեալ բամբիռ ընդ ջընարին,
Իբրեւ զվիճակն Ամփիոնային.
Եւ գործարան ոսկեղենիս,
Որպէս ըզփողըն Մովաբին:
Քաջ հարկանէ՝ անլուր գոչէ,
Ըստ կանխասաց Մարգարէին.
Ըզ ցորդ առեալ զերկինս վերին,
Եւ ձայնակից զերկիրս ներքին:
Ըստ ձայնարկուաց երախանին,
Ցնծել ըզփառքն ախոսելին.
Զի թագաւորեաք նախնին,
Հզօր յաղթօղ քան զամենին:
Յանկարծակի դիւանք չարին,
Զոր չէ տեսեալ ազգ մարդկային,
Անմահ արքային սուրբ երկնային,
Մեզ հայեցան խեթիւ խորին:
Բարձեալ ըզլծագն 'ի յօծելոցս,
Եդեալ 'ի գլուխ օտարոտին.
Առեալ զաշխարհն մեր սեփհական,
Մեզ հիւր եղեալ ըստ Սաղմոսին:
Աստարացուք յեղըարց մերոց,
Բընակելով առ այլազգին.

Եւ երկար եղև պանդըխտութիւն,
Հընացեալք 'ի վրանըս Կեդարին։
Նախ ըզմըրուրն արբեալ Հայոց,
Ըզգա Յունացն առեալ զգիրսն,
Խայտքեաց անդէն ընդ ըուրնդունս,
Զոր մեզ երբեմն ըմպել տային։
Քանզի անկեալ վէճ 'ի նոսա,
Մխաբանեալ զՄօրիկ սպանին.
Նըստեալ 'ի գահըն բըռնակալըն՝
Փոկաս անուն Թըրակացին։
Որդի կայսերըն Թէոդոս,
Զերծեալ 'ի դուռըն Խոսրովին.
Զարթեաւ վիշապըն դարանեալ,
Յորժամ ետես զփախուստ իժին։
Վիժեալ ըզթունըս մաղձարերն,
Զոր ընթեղեալ էր 'ի սըրտին.
Արծարծելով շիջեալ կայծակն,
Զոր կուտակեալ էր 'ի յամբին։
Տեղայր կարկուտըն սաստկագին,
Եւ մըրգաթափ լինէր տընկին.
Զարդեալ զծաղիկըն ծովային,
Եւ ըզշուշան պայծառ հովտին։

Հանգուցանէր ըղձա Ջորթանին,
Ըստ թըրթուըն ընդ մարախին,
Դարձ արարեալ ըզհետ միմեանց,
Ըստ Յովելեայ ողբերգակին։
Դասք անդէոց կական բարձեալ,
Զի նըւաղեալ էր դալարին.
Հօտից խաշանց աղաղակեալ,
Զի հուր եկեր զփայտ անտառին։
Ձայն ուրագաց յամօթ եղեալ,
Զի բոց ծախեաց զնոճն և զսօսին.
Արդ ըստ այլում տեսանողէ,
Ցեղաշըրջեմ զոճն առաջին։
Ընկերակցեալ Եսայեայ,
Եւ համաձայն Թըլթաքաղին,
Ածեալ ՚ի միտ զպատգամս նոցա,
Եւ տաղեցից զերգս առածին։
Ի Սիօնէ Տէր բարբառեալ,
Ձայն այն բարձունքըն սուգ առին.
Նաև երբեք ոչ վերանայ՝
Տապարըն թարց փայտահատին։
Եւ ո՛չ սըղոց առանց ուրուք՝
Դարձէ ըզգործն ըստ առակին.

Նոյնպէս և ո՛չ Թարց Արարչին,
Կարէ ոք քակել զշէնս նորին։
Զի Տէր առնէ զխաղաղութիւն,
Եւ հաստատէ զպատիժ չարին.
Որպէս արար 'ի յանցելումն,
Տանուրց մասանցն Ասիայյին։
Ընդ միտ ազգաւ զկործեցուցեալ,
Մինչև մահուանըն ցանկայրն.
Շարժեալ զձանձիւրն յարևելից,
Եւ զծիասեաց Թուրքաստանին։
Ոչ կամողացն ըզՄելովամ,
Ածեալ զհզօր զեան Իսլամին,
Եւ հեղեղեալ զլոյս և զքանձայրն,
Մինչև հանեալ զհողոյ տակուրն։
Երքայն Պարսից անհուն զօրօք,
Ասպատակեալ 'ի տուն Գամիրին,
Ս ըրէժխընդիր լինէր Մուրկայ՝
Զարն և չարեաց առաջնորդին։
Բըրեալ զքաղաքըն Անտիոք,
Եւ ըզԴարայ ընդ Ուրհային,
Զկեսարիայ Կապադովկին,
Զկարնոյ քաղաքն Բարձրահայքին։

Գերի վարեալ սպասք տաճարին,
Եւ զծերն Յօհան Մանդակունին.
Բնակեցուցեալ 'ի յԱհմատան,
Ի Խուժաստան որջ գազանին։
Ընդէն եկեալ վախճան սրբոյն,
Բերեալ զմարմինն 'ի գիւղն Աւին.
Ի սոյն ամի Տէր Աբրահամ,
Փոխեալ մահուամբ ըԱրքչունին։
Եւ յաջորդեալ զաթոռըն սուրբ,
Տէր Կոմիտաս Տարօնեցին,
Ա՛յն՝ որ 'ի Վաղարշապատին,
Շինեաց զմատուռըն Հռիփսիմին։
Գըտեալ զոսկին սոփերային,
Եւ զմարգարիտըն ծովածին,
Ա՛յնքն՝ ըզսուրբ նըշխարս կուսին,
Կընքեալ ձեռամբ Լուսաւորչին։
Եւ մատանեաւ Հայրապետին,
Պարթեւազնըն Սահակին,
Ինըն թըզաւ չափ հասակին,
Եւ չորս մատն եւ ձև հըսկային։
Խանդակաթեալ Կաթուղիկոսն,
Կընքեալ ըզգանձըն երկէքին.

Դըղըրդեցաւ կողմըն հիւսիս,
Ի տեսանել զբիւրեղն անգին։
Երբեալ զհոգւոյնըն հրածորան,
Տէր Կոմիտաս սուրբ պանծալին,
Երգեալ զեղ՛նակ շարականին,
ԶԱնձինքն ըստ այբուբենն տառին։
Եւ ամփոփեալ զսուրբ մարմինն,
'Ի պահպանութիւն Հայոց ազգին.
Յետ այսորիկ սպանեալ զՓոկաս,
Պատրիկ Հերակլ Եգիպտացին.
Նըստոյց զորդին իւր Թագաւոր.
Խաղաղութիւն արար երկրին։
Եւ արձակեաց հրեշտակս 'ի Պարս,
Մեծ Թախանձիւ հաշտիլ նոցին։
Որում ոչինչ լուաւ Խոսրով ;
Այլ հրամայեաց կախել զնոսին։
Տըւեալ ըզզօրս Խոռխանայ,
Եւ Ռահենայ ոստիկանին.
Հարին զՅոյնս 'բազում տեղիս.
Յորմէ զըրեալն ծանր է ծուլին։
Առեալ զՏարոսն ընդ Մելտինայ,
ԶԵրուսաղէմ Պաղեստինին,

Վարեալ գերի ըղձուրբ Հայրապետն,
ԶԶաքարիայ ընդ սուրբ Խաչին։
Յետ յարութեան մեծ Պասեքին,
Մարգաց ամսոյ քսան և ութին,
Զքաղաքըն սուրբ Հըռոմ լուցին,
Ըզսըրբութիւնսըն պըղծեցին։
Նաև զօրհներգուսըն տաճարին,
Ի գերութիւն խիստ վարեցին։
ԶՊարսկական սուրն 'ի գործ արկեալ,
Զաւուրս երեք ոչ հանգչէին։
Դողացուցեալ տառապելոցն,
Դէշ գազանաց արկանէին.
Իբրև ըզխուղն մըրգապահաց,
Ըմնացեալ դըրունք Սիոնին։
Հեթանոսաց 'ի ներս մըտեալ,
Զժառանգութիւնն յատակեցին.
Հեղին զարիւնս որպէս ըզջուրս,
Իրընակչաց զՍիոն լըքին։
Հռոմեան հասեալ 'ի յարքայէն,
Շինել զքաղաքըն վերըստին,
Հալածելով զազգըն Հրէից,
Նաև տալ զտեղին քրիստոնէին։

Դըղըրդեցաւ կողմըն հիւսիս,
Ի տեսանել զբիւրեղըն անգին։
Արբեալ զհոգւոյնըն հրածորան,
Տէր Կոմիտաս սուրբ պանծալին,
Երգեալ զեղ՝նակ շարականին,
Զ՚Անձինքն ըստ այբուբենի տառին։
Եւ ամփոփեալ զսուրբ մարմինն,
՚Պահպանութիւն Հայոց ազգին.
Յետ այսորիկ սպանեալ զՓոկաս,
Պատրիկ Հերակլ Եգիպտացին.
Նըստոյց զորդին իւր Թագաւոր.
Խաղաղութիւն արար երկրին։
Եւ արձակեաց հրեշտակս ՚ի Պարս,
Մեծ Թախանձիւ հաշտիլ նոցին։
Որում ոչինչ լուաւ Խոսրով,
Այլ հրամայեաց կախել զնոսին։
Տըւեալ՝ ըզզօրս Խոռխանայ,
Եւ Շահենայ ոստիկանին.
Հարին զՅոյնս ՚բազում տեղիս.
Յորմէ զըրելըն ծանր է ծուլին։
Առեալ զՏարոսն ընդ Մելտինայ,
Զ՚Երուսաղէմ Պաղեստինին,

Վարեալ գերի ըղձուըք հայրապետն,
ԶԶաքարիայ ընդ սուրբ Խաչին։
Յետ յարութեան մեծ Պասեքին,
Արգաց ամսոյ քսան և ութին,
Զքաղաքըն սուրբ հըրով լուցին,
Ըզսըրբութիւնսըն պըղծեցին։
Եւ զօրհներգուսըն տաճարին,
Ի գերութիւն խիստ վարեցին։
Զպարսկական սուրն 'ի գործ արկեալ,
Զսուրբս երեք.ոչ հանգչէին։
Դողացուցեալ տառապելոցն,
Պէշ գազանաց արկանէին.
Իբրև ըղխուղն մըրգապահաց,
Ըմայացեալ դըրունք Սիոնին։
Հեթանոսաց 'ի ներս մըտեալ,
Զժառանգութիւնն յատակեցին.
Հեղին զարիւնս որպէս ըզջուրս,
Իրընակչաց զՍիոն լըքին։
Հրաման հասեալ 'ի յարքայէն,
Շինել զքաղաքըն վերըստին,
Հայածելով զազգըն Հրէից,
Եւ տալ զտեղին քրիստոնէին։

Մեծաւ փութով կատարեցաւ,
Կազմեալ զփառաւոր Տեառըն հօտին,
Կարգեալ հովիւ և առաջնորդ,
Ըզմովսեսեան մածող նոցին։
Ա՛յն՝ որ զըրեաց թըւղթ աւետեաց,
Առ Կոմիտաս երանելին։
Ազդեալ զեղեալըն բարութիւն,
Զոր անօրինեալ Տեառն Յիսուսին։
Ձայն հրամանաց հընչէր նամակն,
Դըստերցըն գալ 'ի տես ծնօղին։
Թէպէտ խըստեաց նըման ոչուոյ,
Այլ գըթացաւ հայրըն կըրկին։
Ըստ բարբառոյ մարգարէին,
Հաշտեալ ընդ Երուսաղէմին,
Ըզքահանայսըն 'ի յայս մաղթեալ,
Ափոփել զսիրտ ժողովըրդին։
Մըխիթարել ըզսըրգաւորս,
Տալ զիւղն օծման փոխման մոխրին։
Այնուքն՝ ըզքաւութեան համբոյրն
Ըզլուսաբուխ գերեզմանին։
Մերժել ըզսուգ ճանապարհին,
Ընթանել կից ուխտաւորին.

Հարթել զերբինս և ըղձլուրս,
Զդըժուարագնացս առնել դիւրին.
Հարդել ըզխոշն ընդ դըժնըրկին,
Զերկնահրաւէրն պողոտային.
Զի գընացցէ ըզգուշութեամբ՝
Նորս Իսրայէլ 'ի լոյս շաւղին:
Եւ լեառըն Տեառըն յաւուրս յետինս,
Յայտնի կացցէ իմանալին.
Ազգաց բազմաց խըռախըմբս բարձեալ.
Մըտցո՛ւք 'ի յանշօշափելին:
Վայելելով ըզկեանս անճառս,
Զոր ոչ անկաւ 'ի սիրտ մարդկային.
Փառս տալքել Հօր և Որդւոյ,
Եւ սուրբ Հոգւոյն շնորհաբաշխին.
Թողէց զլորոյս որ 'ի բաղլին,
Զի ոչ ներէ բանըս բնաւին,
Զանպարտ արեանց 'ի վայր կաթելն,
Ի ձեռըն այրեղծ Խոսրովանին:
Հանդերձ զօրօք բիւրաւորին,
Մարտեալ ընդ Կոստանդնուպօլսին.
Տեսեալ Հերակլ ըզՀէնս եկեալ,
Ելեալ սիրով ընդդէմ նոցին.

'Յակամայ կամս հրաւիրս տայր,
Ճ՛աշ եւ ընթրիս եկեալ հիւրին.
Եօթն օր նաւօք ՚ի մէջ ծովուն,
Ըստ սիրելւոյ պատուէր զնոսին։
Սուրհանդակաց ՚ի Պարս գնացեալ,
Պատմեն զեղեալըն Խոսրովին։
Իսկ չարայուզըն Նոր Ա՛ափսակն,
Բ՛անս բարբառեալ անիծագին.
Հայհոյելով զ՚Նազովրեցին,
Եւ զպաշտօնեայս սըրբոյ Խաչին։
Կոչեալ զ՚Հերակլն հանդերձ կընաւն,
Իբր ըզստրուկ ՚ի յարքունին։
Լըւեալ ըզբանս հրովարտակին,
Սընկղիտոսացն եւ կայսերբըն.
Մ՛ըտեալ ՚ի տուն Տեառն աստուծոյ,
'Ըստ Եզեկիայ բարեպաշտին,
Տարածեցին զնամակ բօթին,
Դէմ յանդիման սուրբ սեղանին.
Ո՛երկպագանոց եւ գըլխիբաց,
Տէր Յիսո՛ւս՝ օգնեա՛ ասէին։
Ա՛յսուհետեւ մի անձն եղեալ,
Սընկղիտոսացն եւ արքային,

Ճարիւր և քըսան հազարաւ՝
Երամբ դիմեալ 'տուն Պարսկային։
Յաղթեալ ազգաց բարբարոսաց,
ՅԵղիովիտն և Նինուէին.
Թիկունս հասեալ Տէր՝ Հերակլէ,
Օգնեալ Նըմա յերկու մարտին։
Տեսեալ Խոսրով զփախուստ զօրացն,
Սաստիւ խօսէր 'նդ ամենեսին։
Ապստամբեալ 'ի բաց կացին,
Զչարն իմիջոյ սպանմամբ բարձին։
Թագաւորեալ Կաւատ որդին,
Խաղաղասէրն և գովելին.
Դաշինս կռեալ ընդ Կայսերին;
Իբրաց թողեալ զսահմանս նորին։
Պատուեալ զորդի քաջ Սմբատին,
ԶՎարազտիրոց Բագրատունին.
Տըւեալ ըզգահըն հայրենի,
Ընկեա կարգեալ Հայոց սպային։
Յետ վեց ամսոյ զմա՞ ջերանեալ,
Թողլով ըզթագըն Երտաշրին.
Սակաւ աւուրբք սա պետացեալ,
Եպա Խոռան զօրավարին,

Միաբանեալ ընդ Հերակլին,
Նա սպանանել զարքայորդին.
Եւ ինքն առեալ զդարձուած չարին,
Մինչդեռ շրջէր ՚մէջ հեծելին:
Յանկարծակի յետուստ կուզէ՝
Հատեալ զգլուխ տիրասպանին,
Եդին իշխան զՆանրիշ բըրորն,
Օգուստ՝ Խոսրովու զկին Խոռանին:
Տիրապետեալ ամն երկակի,
Ապա Խոսրով փոխէ զտեղին:
Սակաւակեաց եղեալ սըմին,
Հանդերձ դըստերըն ՚ի յաթոռին:
Աշարմիդուխտ օրիորդին,
Տուեալ ըզթագն փոքր Որմըզդին,
Թագաւորեալ ամըս քըսան,
Եւ իւր ցեղին եղև վերջին:
Իբրև զըստուեր փութով անցին,
Սասանականքն ըՍտահրացին.
Բոռնակալեալ հինգ հարիւր ամ,
Պառաւուն ՚ւ երկու ևս տևեցին:
Մինչ զօրանայ Հագարացւոց՝
Ի մայլեան աղախնածնին.

Նոքա և զայս 'ի բաց բարձին,
Արմատախիլ եղծեալ բնաւին։

Արդ ձեռն արկեալ 'ի յերկրորդ գիրն,
Եւ 'ի պատմել զանցս աղէտին.
Զոր 'ի շփոթեալ ժամանակիս,
Դաւեալ Կայսերն Հրէից ազգին։
Քանզի յորժամ Պարսից զօրացն,
Ըզտունս Յունաց աղմըկէին.
Ապստամբեալ Եբրայեցւոցն,
Յեդեսիայ ամրանային։
Լուեալ Հերակլ ըզգուժ իրին,
Զօրս առաքեալ պաշարէին.
Ռումբաքարըս հոսէին,
Անհընարինըս ծեծէին։
Մինչ զանգիտեալ արտաքս եկին,
Յակամայ կամս երկըրպագին,
Յետ այսորիկ 'ի սուր հասին,
Միաբանեալ ընդ Մահմէտին։
Շարժեալ զօրքն Աբդըլային,
Ի Բաղտատայ զկցըրն հանին,

Ծներեալ Հաւաբովլթըն Մովաբին,
Որ է սահման ըՌուբէնին։
Ընդ բոլբոջել մեղաց մերոց,
Պարտեալ Կեսար Թէոդոսին,
Հռոմայեցւոց տըկարացեալ,
Ի յերեքկին պատերազմին։
Քանզի Հերակլ պոռնըկացեալ
Իծերութեան ժամանակին,
Զուգեալ ընդ ազգըս մերձակայ,
Պատահելով զցանկ հայրենին։
Վասն այն յօձէ անապատին,
Հարեալ խապառ անկանէին.
Մեծամեծացն աղքատացեալ,
Զի զՏէր Աստուած ոչ խնդրեցին։
Իգլուխ ելեալ խոստումն Տեառն,
Յազգ մեծ եղեալ Իսմայէլին.
Զօրըորդ գազանն ահեղակերպ,
Ըստ յայտնութեան Դանիէլին,
Որ առաւել էր քան զերեքն,
Ժանիքն երկաթ և պղընձի,
Ուտէր մանրէր առհասարակ.
Զմնացեալն առնէր կոխան ոտին։

Հարաւայինս օրինակեալ,
Յազգըն ժըպիրհ Հագարացին.
Որք նախ զՊարսիցն աթոռ բարձին,
Ապա 'ի Յոյնս ձեռնարկեցին։
Առեալ զքաղաքն Աստուածակոխ՝
Զերուսաղէմ Հրէաստանին,
Ծայրէ 'ի ծայր արեամբ լըցին.
Զբարկութիւն Տեառն յագեցուցին։
Ապա զմնացեալս խնամարկեցին,
Զհաւատս նոցա վաճառեցին.
Մանչուր գըրեալ ըզսակ հարկին,
Կրկնեալ ձեռամբըն Մահմետին։
Եւ մինչ կենաց ակն ունէին,
Հաւատացեալ փոքու հօտին,
Հրէից այլ իմն չար խորհեցին,
Առ 'ի ջնջել զհօտն Յիսուսին։
Պըղծեալ զտաճարն Սողոմոնին,
Զանօրինաց ուխտատեղին,
Ի գիշերի կալեալ ըզխոզս,
Յաղօթատեղս զարիւնս հեղին։
Իսկ ողորմածն ամենայնի,
Ամենագթածն Աստուածորդին,

Լներեալ Ճառագայթըն Մովսէսին,
Որ է սահման ըՌուբէնին:
Ընդ բոլորքել մեղաց մերոց,
Պարտեալ Կեսար Թէոդոսին,
Հռոմայեցւոց տըկարացեալ,
Ի յերեքկին պատերազմին:
Վանզի Հերակլ պոռնըկացեալ
Ի ծերութեան ժամանակին,
Զուգեալ ընդ ազգըս մերձակայ,
Պատառելով զցանկ հայրենին:
Վասն այն յօձէ անապատին,
Հարեալ իսպառ անկանէին.
Մեծամեծացն աղքատացեալ,
Զի զՏէր Աստուած ոչ խնդրեցին:
Ի գլուխ ելեալ խոստումըն Տեառն,
Յազգ մեծ եղեալ Իսմայէլին.
Զորրորդ գազանն ահեղակերպ,
Ըստ յայտնութեան Դանիէլին,
Որ առաւել էր քան զերեքն,
Ժանիքն երկաթ և պղընձի,
Ուտէր մանրէր առհասարակ.
Զմնացեալըն առնէր կոխան ոտին:

Հարաւայինս օրինակեալ,
Յազգըն ժըպիրհ Հագարացին.
Որք նախ զՊարսիցն աթոռ բարձին,
Ապա 'ի Յոյնս ձեռնարկեցին:
Առեալ զքաղաքն Աստուածակոխ՝
ԶԵրուսաղէմ Հրէաստանին,
Նստայրէ 'ի ծայր արեւմբ լցցին.
Զբարկութիւն Տեառն յագեցուցին:
Ապա զմնացեալս խնամարկեցին,
Զհաւատս նոցա վաճառեցին.
Մանշուր գըրեալ ըզսակ.հարկին,
Կընքեալ ձեռամբըն Մահմետին:
Եւ մինչ կենաց ակն ունէին,
Հաւատացեալ փոքու հօտին,
Հրէից այլ իմն չար խորհեցին,
Առ 'ի ջնջել զհօտն Յիսուսին:
Գըղծեալ զտաճարն Սողոմոնին,
Զանօրինաց ուխտատեղին,
Ի գիշերի կալեալ ըզխոզս,
Յաղօթատեղս զարիւնս հեղին:
Իսկ ողորմածն ամենայնի,
Անմեղաթափն Աստուածորդին,

Յայտնեալ զծածուկ գործեալ դարանս,
'ի Խիկունս հասեալ խաչապաշտին։
Զանգի յորժամ զխոզըն ըսպանին,
Եւ 'տաճարէն արտաքս ելին,
Գըլխաւորացն Իսմայէլին,
Դիպեալ 'ի դէմ ճանապարհին։
Զտեղի առեալ զըրոյց տային,
Ապա գնացեալ յաղօթս կային.
Տեսին զեղեալըն չարութիւն,
Բայց ծիկ ումեք վէր ոչ հանին։
Ընդ լուսանալ առաւօտին,
Խըռովեցաւ Հագարացին.
Ըզքրիստոնեայս խորհին ջնջել,
Իբրու զգործող այնու վնասին։
Ի յասպարէզ մտեղէին,
Բանսարկութեամբ Հրէից ազգին.
Եւ մինչ մահուան տուժ կամէին,
Տեսողք վնասուն յառաջ կացին։
Լուծեալ 'կապից ըզքրիստոնեայս,
Զազգըն Հրէից ժողովեցին.
Իձեան արկեալ զչարիկագործս,
Եւ չար մահուամբ սատակեցին։

Զրկեալ 'պատուոյ ղազգն անիծեալ,
Զիշխանութիւն նոցա առին.
Ընդ թշնամիսն համարելով,
Գերրով որդւոց աւանդեցին:
Քրիստոնէիցն անմեղացեալ,
Եւ խիղճ յանձինս ոչ ունէին.
Զի գիտէ Տէր զաստուածապաշտս,
Փրկէ 'չարէն ըստ Պետրոսին:
Եւ որ փորէ գուբ ընկերին,
Ինքըն լըցցէ զատակ նորին.
Զոր և որդիք տիրասպանիցն,
Առեալ ըզդարձ փոխարինին:
Յետ անցելոյ այսմ ներկայիս,
Ըզ Հայաստան հըրդեհեցին.
Քաղըրդաշուրթ ժողովըրդեանն,
Արեամբ զերկիր ոռոգեցին:
Ի ժամանակս Թէոդոսին,
Ըռըշտունեաց մեծ իշխանին,
Եւ Եզրասայ երկաքնակին,
Որ Եզր եղև հարցն օրինին:
Նախ քան զՄահմետն այլ ոմն իշխան,
Քաղըրդ անուն շուն կատաղին,

Նուար առեալ ըզԴամասկոս,
Եւ զՀայաստան բոլորովին։
Յետ ութ ամաց անցանելոյ,
Յայտնեալ նեռին կարապետին,
Վաճառական Եգիպտացին,
Աշակերտեալ Բըխիրային։
Ուսեալ զաղանդն Արիոսին,
Եւ զաղճատանս Կերինթոսին.
Որք ասէին յետ Յարութեան,
Ամուսնանալ բարեգործին։
Եւ մարմնաւոր զարքայութիւնն,
Գործ կերակրոյ ըստ Պօղոսին.
Նոցա տեղեակ եղեալ Մահմետ,
Եւ օրինացըն Մովսէսին։
Հեշտախտութեան եղև քարոզ,
Որպէս գրեալ 'ի Կուրանին.
Դադարեցոյց զսուր Քաղըրդին,
Հարկ պահանջեալ 'ի յարքունին։
Յամէն տանէ դըրամս չորս,
Երեք մարզման առնել զգարին.
Մազեայ պարան ընդ տօպրակին,
Եւ ձեռն արար մի հետ սոցին։

Դըրբեալ նալաթ(*) իւրոյ Ազգին,
Թուէ յաւելուն ըզսակ հարկին.
Իսկ ազատացն և հեծելոցն,
Ընդ քահանայս ազատ լիցին։
Յետ երեսուն և ութ ամին,
Դիմեալ 'ի Հայս Մահմատ վերջին.
Ա՛յն՝ որ փըլոյց զԳեղամայ ծովն,
Առեալ յաւար զՍևան կըղզին։
Եւ մարտ եդեալ ընդ Ըստամբօլ,
Սակայն յաղթեալ սաստմամբ Խաչին.
Տեսանելով զկորուստ զօրացն,
Նըկուն դարձաւ 'ի յիւր տեղին։
Պատմէր զեղեալ ըսքանչելիս,
Ծունըր կըրկնեալ սըրբոյ խաչին.
Այնուհետև այլ ոչ իշխեաց,
Ապառացինել զանձն եզկելին։
Եւ ոչ նըստեալ 'ի ձի թամբով,
Ամբարհաւաճ ուրացողին.
Այլ նախատուր ամենեցունց,
Իբր ըզվատնող իւրոյ ազգին։
Հոգոց հանէր խորոց սըրտին,

(*) Անէծք։

Թանձրըն ցընդէր զծուխ ըմըընկին.
Ա՛յն՝ որ երդմամբ կալեալ յանձին,
Զի խորտակէ ըզփայտ խաչին։
Եւ արասցէ զսուրբըն Սոփի,
Տեղ լըւացման՝ գոմ անասնին.
Թըրշնամանէր անարգելով,
Զօրհնեալ անուն Մեսիային։
Եւ ինքն արբեալ ըզբարկութիւն,
Նեռն և նեռին կարապետին.
Սորա 'նդ առաջ ել Տէր Սահակն՝
Կաթուղիկոսն ըՌըշտունին։
Ի ճանապարհըն վախճանեալ,
Մուրհակ գըրեալ բըռնաւորին.
Իսկ նա լըւեալ զպատգամ սրբոյն,
Խոնարհութեամբ առնու յանձին։
Տըւեալ զմանշուր(*) ըստ առաջնոյն,
Թողեալ ըզհարկ երից ամին.
Ազգն աճեցին և բազմացան,
Յուրի ելեալ ըստ աւագին։
Սակայն յորժամ մեղացըն թիւ՝
Լըցեալ ըզչափըն յաւելին.

(*) Հրովարտակ արքունի։

Թագաւորեալ թագ կապեցին,
Եւ բոլորիցըս տիրեցին։
Մինչ զ՚ոռոմոց փըշրեալ զեղջիւ
Զթագն ՚ի գըլխոյ նոցա առին.
Նախ ըզՊարսիցըն Տէրութիւն՝
Կորզեալ յինքեանս՝ բըռնկանային։
Ապա լուծեալ եգեալ ուխտին,
Որ ընդ Յունաց Թագաւորին,
Ի մետասաներորդ ամին՝
Կոստանդնիայ մեծ արքային։
Թուխտ առաքեալ գոռոզ Մուլին,
Նախատելով զՆազովրացին.
Երեք հարիւր նաւս ետ կազմել,
Զինուք լըցեալ զամենեսին։
Յիւրաքանչիւր նաւս հազար այր՝
Զքաջամարտիկսըն կարգեցին.
Եւ ընդ սոսա այլ փայտեայ յարկ,
Հինգ հազար փոքր քան զառաջին։
Յորում տանէր այրըս հարիւր,
Թեթեւընթաց յածէզ անձին.
Եւ այլ զօրաց զցամաքայնով,
ԶԲիւզանդիայ պաշարեցին։

Պ՚ախար առեալ սրբանային,
Նաւամատկաց շուրջ զքաղաքին.
Սրբտաքեկեալ ազգ Հռոմին,
Ըզմեքենային յորժամ տեսին։
Մըտեալ ՚ի տուն Տեառն Աստուծոյ,
Որպէս արար Իսրայէլ հին,
Տարածելով զգըրեալ մուրհակն,
Առ Տէր Յիսուս արտասուէին։
Տե՛ս՝ Տէր՝ ասեն ըզնախատինս,
Զոր նախատեաց Հագարացին.
Լի՛ց ամօթով զերեսս նոցա,
Որպէս երբեմն զԱսուրացին։
Զի ծանիցեն զանուն քո սուրբ,
Եւ զզօրութիւն սրբոյ խաչին.
Հրատարակել զգործըս հրաշից,
Ի Տաճկաստան տուն Մաքային։
Զայս և որ նըման էր սըմին,
Արտասուագոչ աղերսէին.
Արգահատեա՛լ մինչդեռ կային,
Նաւայածին զօրքըն հասին։
Ըզմանկղիոնսըն լարէին,
Եւ ըզհէլ աշանս յօրինէին.

Ըզքարընկէցսըն կանգնէին,
Դէմ քաղաքին յարդարէին։
Անցեալ ընդ ալիս ամեհին,
Զմրկանս ծովուն նուաճէին.
Չիք ասպարէս լեգէօնին,
ԶՈվկիանոս մէջ առնէին։
Վստահացեալ 'ի զօրութիւնս,
Ըզմիմեանըս խրախուսէին.
Ու գիտելով կոյրքըն մըտօք,
Հաւանականքըն Մահմետին,
Թէ սուտ է ձի 'ի փըրկութեան,
Ու յաղթանդամըն հըսկային.
Ու աչք Տեառըն է հովանի,
Ներկիւղածացն ըստ սաղմոսին։
Մինչև փորձի ըզգանն արքին,
Անդընդասույզ կորեալ գընդին.
Քանզի յորժամ խըլըրտէին,
Ու յաղթութեան երգս երգէին.
Ակնարկելով Տէր 'ի յերկնից,
Խորք անդընդոց խըռովէին.
Ներքուստ 'ի վեր պըտուտկելով,
Նըլւք 'ի ջուրք ծածանէին։

Հողմոյն սաստեալ Ավկիլոնու,
Նաւքն առ իրեարս զետեղէին.
Բշտապելով 'ի կոհակաց,
Ի չափ լերանց վերանային։
Եւ խողխողեալ ծայթմամբ ամպոց,
Հետհետ յատակս իջանէին.
Խորափոսին թերանացեալ,
Ոչ յագենայր արեամբ նոցին։
Մինչև 'զմեց օր տարաբերեալ,
Եկուլ զամբոխն անհընարին.
Ապրեցուցեալ յաւուր յայնմիկ,
Տէր ըզքաղաքըն Բուզային։
Այլ յայտ լեցի այս խընդրողին,
Երկուս լինել գործ ըռազմին.
Մինն՝ ընդ Թոռին Հերակլոսին,
Երկրորդ՝ յաւուրըս Լևոնին։
Ամըրմլունայըն զօրացեալ,
Ի յըՍտամպօլ աթոռ արկին,
Յետ յոլովից ժամանակաց,
Եւ Կիռ Մանուէլ Թագաւորին։
Այլ և ընդ այս պարտ է յիշել,
Զնենգժոտութիւն Յունաց ազգին.

Եւ զխըմորիլըն Ներսէսին,
Ի զանկուածոյ Քաղկեդոնին։
Ի ժամանակըս Կոստանդեայ,
Օգոստափառ ծիրանածնին,
Ա՛յն՝ որ կացոյց իշխան Հայոց,
ԸզԹէոդոս ըՌըշտունին։
Եւ պատերազմ եւ սաստկագին,
Ընդ զօրս որդւոց ծառայածնին.
Յորմէ լուծեալ զերդումն ուխտին,
Հայոց իշխանքն յետըս կացին։
Դաշինս կըռեալ ընդ Մաւիաս՝
Հագարացւոց բըռնաւորին.
Թէպէտ յետոյ սըտըրջացին,
Այլ հասանել ոչ կարացին։
Լըւեալ ըզգուժըն Կոստանդեայ,
Եկեալ 'ի Թէոդուպոլին.
Թախանձանաց Թուղթ առաքեալ,
Ի բաց մերժել զուխտըն Մաւին։
Ոմանց լըւեալ առ նա եկին.
Իսկ Թէոդոս չառեալ յանձին.
Հանդերձ Վըրօք եւ Աղուանօք,
Եւ մեծ Սեփաւ Սիւնականին։

Մըտեալ յԱղթամար,
Մարտս յօրինեալ ընդ Կոստանդին.
Գունդն ինչ յաւուրն հակառակեալ,
Գայ 'ի հնազանդութիւն կըրկին:
Եհաս համբաւն առ Մաւիաս,
Ետ կոտորել զարս պատանդին.
Որ էր թըւով հազար և հինգ՝
Եօթըն հարիւր ընդ եօթանասնին:
Որք պըսակեալ 'ի Քրիստոսէ,
Դասակցեցան 'նդ իննեակ դասին.
Իսկ թագաւորըն Կոստանդին,
Ձմերեալ 'ի քաղաքըն Դըւին:
Ուր էր Աթոռ Պատրիարգին,
Նըստեալ Ներսէսըն Տայեցին.
Որ մըթերեալ էր 'ի սըրտին,
Լինել հաղորդ Յունականին:
Զի էր հըմուտ Հելլեն լեզուին,
Եւ կորովի 'ի գիրս նոցին.
Յաւուր միում քարոզեցաւ,
Յեկեղեցիս սուրբ Գրիգորին,
Հաւանութիւն Քաղկեդոնին,
Հրամանաւ Կաթուղիկոսին.

Հաղորդեցաւ Թըշուառականն,
Ձեռամբ Հոռոմ քահանային։
Եւ ընդ ինքեանս գայթակղեցոյց,
Ըզպաշտօնեայս Լուսաւորչին.
Իսկ մի ոմն յեպիսկոպոսացն,
Ոչ հնազանդեցաւ չար հրամանին։
Ամբաստանեալ Կաթուղիկոսն,
Մատնեալ 'ի ձեռըն Կայսերին.
Կոչեալ ըզսուրբն 'ի յատենին,
Սաստիւ խօսէր ընդ այցելուին։
Իսկ նա բերեալ զգիրս Ներսէսին,
Որ էր նըզովք երկաբնակին.
Զի նախ քան հրաման հասեալ,
Պատուել զժողովն Մարկիանին։
Զոր Ներսէսի նըզովք գըրեալ,
Եւ անգոսնել զպարսաւելին.
Զթուխտ նըզովին յառաջ բերեալ,
Պապանձեցաւ արտասուելին։
Հոռոմ երէցքն յաղերս անկեալ,
Զկամս արքային հաշտեցուցին.
Առեալ տարան զերանաքաղն,
Պատուով 'ի Կոստանդնուպօլին։

Տըւեալ ըզվարձն ուրացութեան,
Երից թըշուառ Հայրապետին.
Եկեալ 'ի Տայս 'ի յիւր բընիկն,
Այլ ոչ իշխեաց գալ 'ի Դըւին։
Զի Թէոդոս ըՌըշտունին,
Վըրէժխընդիր էր հաւատին.
Մինչև շիջեալ ջահըն լուսոյ,
Եկեալ վախճան սևաստուսին։
Ապա եկեալ 'ի յԱյրարատ,
Շինեալ զՏաճարս 'ի Վարդգէսին.
Զմինն 'ի վերայ պողոտային,
Ըզտեսլեան տեղըն Գրիգորին։
Զոր դիւաբախքըն Տըրդատեայ,
Եղին 'նդ յառաջ Լուսաւորչին.
Եւ ըզմիւս ևս տեսլեան տեղին,
Յորմէ զուարթունքն յերկիր իջին։
Ակնքեալ զանունըն տաճարին,
Հրեշտակապետք ըստ պատշաճին.
Այլ և աղբիւրք բերեալ 'ի վայրքն,
Շինեալ զերկիրն Արամանին։
Շինօղ ըզնա յորջորջեցին,
Կոչեալ երկրորդ ըզկնի Նոյին։

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՃԱՐԱԳՐՈՒԹԵԱՆՑ

ԵՒ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԱՊԱՐԱՆԻՑ ՍՈՒՐԲ ՆՇԱՆԻՆ։

Ընդ սոսա որք ցուցանեն հեծեծանաց է վերայ
Մեծոփայ սուրբ ուխտին. զոր ամենայն հաւատա-
նէ պարտ է վերանալ և հանապազ երգել։

Ի թիւ հազար եւ հարիւրոց,
Կատարեցաւ բանս պատմագրոց
Ի թուականիս ազգիս Հայոց,
Հազար 'ւ երսուն 'ւ ինն ընդ սոցունց.
Ի 'յեղանակս վերջին դարուց,
Յիշխանութեանս Հագարացւոց.
Ըզկնի առմանըն Թավրիզոյ,
Ամաց հրնգից մէջ անցելոց։
Ի յանջատման մարմնոյս ծնօղէ,
Երկուց ամաց աւարտելոց,
Հոգւոյ հօրէ որբացելոյ,
Միակամաց լըրացելոյ։

Յորմէ պատճառն իմոյս բարւոյ,
Վարժեցուցողն իմաստ գըրոյ,
Թագազարդողն մըտացս գըլխոյ,
Եւ լուսատուն ծըրագիս մարմնոյ,
Յինէն բարձաւ ըստ Եղիոյ,
Իսրայէլի կառքըն նորոյ,
Անբաւական գոլով մերոյ՝
Առ 'ի մաշկեակըն հըպելոյ։
Եւ ո՛չ տեղի պատրաստելոյ,
Կըրկին զհոգին ընդունելոյ.
Որպէս ի սերմըն սապատայ,
Եղիսէոսըն հանգչելոյ։
Եւ ո՛չ գործոյն կարող գոլոյ,
Ի տեսողացն ըստուգելոյ,
Ըզգեստ՝ մեղացըն ցելելոյ,
Ամուլ հոգւոց ծընունդս տալոյ.
Եւ ո՛չ կըրկին կեցուցելոյ,
Ըստ Սոմնացի կընոջն որդւոյ.
Որ յօրինակ եօթնարփենին,
Կըծկեալ փըշէր զնիւթըն կելոյ։
Եւ ո՛չ ունիմք զայլն արկելոյ։
Ի զառանցեալս մեղաց գործոյ.

Զի զանհամեալս 'ի համ բերէ,
Որպէս նա զջուրն Երիքովյ:
Ո՛չ թէ սուրբ հօրն է այս վընաս,
Զոր տեսանէք յորդիս պակաս.
Այլ իմոյս եղկեալ կամացս,
Յամենեցունց լինիմ քամբաս:
Զի հրեշտակացն էր նա սարաս,
Ընհամեմատ յերկրաւորացս,
Սրբազանիցըն գերադաս,
Տէր Յովհաննէս հոգւոյն օծեալս:
Սուրբ վարդապետս Աստուածաբան,
Լուսաւորիչ Թորքոմածնաց,
Որդ 'ի յերկինս է վերելած,
Ի յանդրանկաց խորանս մըտած:
Երևն 'ի մայրն վերադարձած,
Արուսեկին պայծառացած.
Զիմանալին անտեսն յաչաց,
Վարձս ընկալեալ աշխատանաց:
Նըշոյլք լուսոյն անքամ մնացած,
Յեկեղեցեաց Հայաստանեայցս.
Իմաստութիւնն արձանացած,
Գանձ' մեղեղի' երգ սըրբասաց:

Ըզհոգեւորն պտուղ շըրթանց,
Գըրով թողեալ աշակերտաց.
Ի յառագաստ սրգածեմած,
Ընդ երջանկացըն գոլ բերկրած:
Մաքուր գըլխոյն անդամ յօդած,
Ընդ Նահապետս պատուասիրած.
Մարգարէիցըն մեծարած,
Եւ յառաքեալսըն միացած:
Վարդապետացն անդրանկացած,
Ընդ Հայրապետսն գերադասած.
Մարտիրոսաց 'գունդսըն խառնած,
Ընդ Ճգնաւորսըն պըսակած:
Թէպէտ Մարմնով է հեռացած,
Ի տըրտմութեան հովտէս զատած.
Այլ խընամօքն 'ի մեզ բնակած,
Անանջըրպետ մինչ կատարած:
Այժմ ընդ սըրբոցն է 'ի պարի,
Հընոց Նորոցն ամենայնի,
Երկնաւորացն և երկրայնոցս,
Որք զաթոռոյն են 'ի խըմբի:
Թագաւորեալ 'ի յապառնի,
Ըստ 'յայտնութեան Յովհաննիսի.

Յորմէ ճայցէ ձայն լըսելի,
Զեկայք օրհնեալըն հայրենի,
Ինձ մեղապարտ աշակերտի,
Գիտակ անուն Արմէոփնի.
Որ արտասուօք զկամարս թացի,
Զանհնազանդ կեալս՝ ե՛րբ յիշեցի։
Եւ զանհնարին յետըս դառնալ,
Զանհընազանդութեան պատիւըն տալ.
Բանիւ լինիմ յաղերս անկեալ,
Մինթէ հաճի հայրըն գըթալ։
Յորժամ շինուած մարմնոյս քակեալ,
Յարկս հողեղէնս ամայացեալ,
Զբնակիչ հոգին առ ինքն ածեալ,
Բարեխօսէ Տեառըն բարձրեալ։
Եւ մինչդեռ եմք 'ի յաշխարհի,
Ի ցաւալից յայս կենցաղի,
Հայցէ պահել անդըրդուելի,
Ի յարկածից սատանայի։
Մանաւանդ ըզնըշդեհացեալս,
Ի դառնացեալ ժամանակի.
Յորում բնակիմք յայս ամրոցի,
Ի Նահանգիս Բաջքերունի,

Յաստուածաբնակ մենաստանի,
Յորմէ Մեծոփ վերաձայնի.
Որով Փըրկիչըն մեր բարի,
Տեղ պատրաստեաց ապաւինի։
Որք և յապայն ժամանակի,
Յանձն եղիցո՛ւք Տեառն Յիսուսի.
Ամ և գործոյս ձեռըն տացէ,
Ճաստահեղոյս այս պարըսպի։
Ճանուցանէ յաւարտ ըզկերտս,
Ամրափակել շուրջանակի.
Լըսել զքարբառ մարգարէին,
Աստուածահօր մեծին Դաւթի։
Բաց է արտաքս մեր թըշնամին,
Անդուստ խօսել ամօթալի.
Յայնժամ ասեմ ես երանի,
Երբ ցանկութիւն սըրտիս լըցցի։
Ի ժամանակս յորժամ տացէ,
Վուն սիրելեացս որ 'ի մէջի,
Նա առն որդւոց ժառանգութիւն,
Զերդ գերելոցն Բաբիլոնի։
Բարի արա՛ Տէր կամօք քո,
Որպէս 'Նախնումըն Սիօնի.

Զի շինեցէ զամուր պատուարս,
Աւազակաց մուտըն խըցցի։
Ո՛չ կասկածել յահէ նեղչաց,
Ոչ 'ի հնարից ելուզակի.
Յայնժամ շըրթունք հոգւոյս բացցի,
Բերանս օրհնեալ արժանասցի,
Փառս առաքել Երրորդութեան,
Յանցեալն՝ յայժմուս՝ յապագայի։
Արդ յայսպիսում ժամանակի,
Դառն և դժուար և անբարի.
Յորմէ երկիրըն անօրինի,
Եւ սուտ անուն Քրիստոնէի,
Զմեզ բնակեցոյց յայսկոյս ծովի,
Հանդերձ ծնողօք յԵգիպտոսի.
Ի սեփհական երկրէն ելեալ,
Ըստ հին կոչման անուն Եղցնի.
Որ մերձակայ է 'ի Կորդիս,
Եւ Կորճէից տանըն դըրացի.
Պատըսպարեալ Տեառըն խնամօք,
Ըստ Նարեկայ Գրիգորիսի։
Յելից տարւոյն մինչև 'ի մուտս,
Ըջ Ենեղին է հովանի.

Եւ բընիկ գիւղն իմ Ապարանց,
Ի յԱրծրունի զարմէն շինած։
Յարեւելից տանէն եկած,
Ի լեռնոտին եղեն կացած.
Ի նոյն ցեղէն շառաւիղեաց,
Եպիսկոպոսըն սըրբասած,
Գուրիթ յազգէ Թագաւորաց,
Սքանչելագործն ՚ի մէջ ազանց.
Ա՛յն որ հող սուրբ գերեզմանին,
Զարհուրեցոյց զիշխանս Յունաց։
Ի ձեռըն սուրբ ծըգնաւորին,
Մանկլեկ ՚ի նոյն զարմէն սերած,
Ի հոյակապըն յըՍտամպօլ,
Յականաւորն տիեզերաց։
Յորմէ հարցեալ զխընդիրս կամաց,
Գըրտին գոյից անկարօտած.
Կենաց Փայտին էր փափաքած,
Ընման գանձին խընդիր ելած։
Ստեփաննոսի Թըղթով ազդեաց,
Ի ձեռըն ժիր սուրհանդակաց.
Որկին տեսին զհրաշըս փառաց՝
Վասըն Կոստանդն իշխանքն օծած։

Զի մինչդեռ էր մեծամեծաց՝
Ի դիւանի խօսս պարապած.
Եկեալ կայցին սուրհանդակքըն,
Պատմեն զպարգևըս խընդրողաց։
Ստեփաննոսէ գող ուղարկած,
Ի նոյն ժամուն ուղևորած.
Յորմէ ատեանն եղև ափշած,
Ընդ սքանչելեացըն հիացած։
Զի որպէս մերթ առ Ամբակում,
Յերուսաղէմ հրաշըս գործեաց.
Սոյնպէս յայնժամ անճառն Աստուած,
Վասըն Հայոց զայս ներգործեաց։
Ընդ ըզմարմնոյ պէտըս հոգաց,
Գանիկէն ճաշ առաքեաց.
Աստ ըզհոգւոյ ձիրն ընձեռեաց,
Յարևելից Հայոց մեծաց։
Տարաշխարհիկն եղև պատուած,
Յոսկիակազմ աթոռ բազմած.
Իւր ազգայնոցն ընծայ շնորհեաց,
Ստեփաննոսի Տեառըն փառաց։
Մասունըս եօթն 'ի Քրիստոսէ,
Եւ յայլ սըրբոց չորեքտասանց

Հանդերձ զօրօք բիւրաւորօք,
Իջեալ եղին 'վայրս Մայեկաց:
'Մեծ ուրբաթին հիմնարկեցին,
Օծումն եղև 'ի խաչվերաց.
Եկեալ 'ի տես մեծ իշխանաց,
Սենեքարիմ և այլ եղբարց:
Ակումբ առեալ հօրմերգութեանց,
Նոր եղանակ երգեն հընչմանց.
Գովեն ըզխաչըն պարծանաց,
Զենարարի արեամբ ներկած:
Եւ ընդ նմա զայլ սուրբ մասունս,
Զչորեքտասանսըն հաւաքած,
Եղին 'տաճարըն Աստուածածնի,
Զորդին 'ի մայրն յաւանդ տըւած:
Ըզվըկայսըն չարչարանաց,
Եւ զսուրբ նըշխարս նահատակաց.
Զի միասին ուրախացած,
Մայրն և որդին ընդ սիրելեաց:
Շինեալ զՏաճարն յորձաքարաց,
Զանազանեալ 'ի ճարտարաց՝
Ամենըկար զմէջըն ծաղկած,
Քանդակագործ ծովացուցած:

Սողոմոնեան համեմատած,
Եւ քան զնոսայն այլ գերազանց,
Յերկնից կամարըն նըմանած,
Եւ 'ի կաճառս լուսեղինաց:
Կազմեալ տապան յանփուտ փայտից,
Իշափիւղաց և մարգարտաց.
Ընտիր անօթ յանգին ականց,
Որ յանիծից ըզմեզ գընեաց:
Ի սուրբ խորանն է հանգուցած,
Աստուածածինըն կայ եդած.
Ի գիրկ ծնօղին որդին գըրգռած,
Հանդերձ դասիւք սպասաւորաց:
Ի Թումայի գըրոց պատմութեանց,
Ճ'ըշմարտութեամբ է ըստուգած.
Ի Գրիգորէ Նարեկացւոյ,
Արքային զճառըս հաստատած:
Ի հըննագէտ նախնի արանց,
Աւանդութեամբ առ մեզ հասած,
Թէ լուսատուն Հայաստանեայց,
Սուրբըն Գրիգոր 'ի Պալհաւկաց,
Նախ սոա Տաճար նա հիմնարկեաց,
Սուրբ Կարապետ զանուն կընքեաց.

Յորմէ Գուլիթըն կայ թաղած,
Ի հարաւոյ կուսէ եղած։
Ընդանութեան հրաշըս գործեաց,
Զոր է յայտնի 'ի տեսողաց.
Բայց յետ մահուն հոգ‥ Տապանին,
Ի տունս Հռոմոց կըրկին փայլեաց։
Հարցին զՄանկլիկ ազգըն Գամրաց,
Նա զհաւատին նոյա պատմեաց.
Ով է ազգական Նոմես Գուլթի,
Ի յԱրծրունի գաւազանաց,
Եւ Ստեփաննոս իմ ազգային,
Այժմ է 'ի նոյն աթոռ նըստած.
Ապա քըննեալ հրապարակին,
Եւ հաւանեալ ընկղիտոսաց։
Ի թուականիս չորս հարիւրից,
Երսուն 'ւ երկու ըստ պատմողաց,
Յիշխանութեան տանն Արծրունեաց,
Զոր վերոգըրեալս բացայայտեաց։
Ի ժամանակս Տէր Գրիգորի,
Նարեկացւոյ սուրբ յորջորջած.
Այն որ գըրեաց ըղպատմութիւնն,
Գըրակ անուանըն պարգեւեաց։

Յորմէ և իմ հեռանելով,
Ի յոտ հանի ըստ իմ կարեաց:
Արդ յայսպիսի պայծառ ուխտէ,
Զոր ծանուցաք փոքրիշատէ,
Նուաստ ոգիս 'ի նմանէ է,
Վերջին ծընունդս յԱղձնեաց տանէ:
Զոր ամենայն ոք աղարտէ,
Անտոհմային ըզմեզ անէ.
Պարսաւադէտըն բամբասէ,
Անփակ բերանըն բարբառէ:
Զկրծեցուցեալ օր ըստ օրէ,
Նուաղեալ ըզմեզ մաշէ.
Զի թիւ մեղացն իմ յաճախէ,
Մինչ աստեղաց թըւոյն յաղթէ:
Եւ քան ըզգլուխըն բարձրացեալ,
Իբր ըզծանրաղ զմիտքըս հակէ.
Վասն այն չարին, բարձըր պարծէ,
Ըստ իմ չարեացն որ անչափ է:
Զաշխահըն մեր օտար ուտէ,
Եւ մեք կացեալ 'հեռաստանէ.
Մեր բնակութիւնն աւերակ է,
Եւ ի յարկս մեր ոչ ոք բնակէ:

Որպէս երբեմըն Պըրիտոէ,
Յուշկապարկացըն կայեան է.
Ոզնի ճագար զերդ 'ի Սինուէ,
Առեալ հանգիստ և դադարէ։
Դրունք տաճարին Տեառն 'ի սուգ է,
Զի ուխտաւորքըն ոչ ոք է.
Ընդ ելս և մուտս աղուէսն առնէ,
Որպէս ծանոյց Երեմիէ։
Այլ աստանօր ըզկայ առցէ,
Ողբանքս իմ տանն յորմէ ելէ.
Թէպէտ աղիքըս գալարէ,
Եւ ցանկ երկանցըս տագնապէ։
Այլ նոր աղէտըս զիս լըլկէ,
Եւ զիմացուածըս պաշարէ.
Յաւ ընդ ցաւոց յարաբարդէ,
Եւ յանհնարինըս խուճապէ։
Տեսք սուրբ ուխտին զիս խոցոտէ,
Եկեղեցեացս որ խաւար է.
Զամենեսեան 'ի յողբ շարժէ,
Լաց և 'ի սուգ նըստուցանէ։
Առ քեզ են բանքս սըրտաբըրբոք,
Ո՛վ հրաշալի սուրբըդ Մ՝եծոփ.

Տեառն ողկուզին հընձան և գուբ,
Անմահ հացին ամբար անփոփ։
Տուն Աստուծոյ Տաճար և տուփ,
Մեղաւորաց քաւիչ և սփոփ.
Ի քեզ բնակէ աներևոյթ,
Որդին 'ի ծոց Մօրըդ լուսոյդ։
Աստուածաբնակ խորան տայդ,
Յոհաննիսէ շինեալ նորոգ.
Պըշխոյ անմահ փեսային զոյգ,
Գըրկախառնեալ յանախտն անջօկ։
Վառեալ 'ի սէրըն սուրբ բորբոք,
Խանդակաթեալ նովաւ անհոգ.
Զըմըռսալից հանդերձ մարմնոյդ,
Վըրքըմացան խոյրըն գըլխոյդ։
Իսկ 'ի տըտուն ոմացդ ծածկոյթ,
ընդելուզեալ բոլոր զգեստոյդ,
Շարս Մարգարտաց զարդ ունելոյդ,
Եւ վարսակալ մաքուր գեղոյդ։
Նխուլթ կոնքուշաց ներկ ծիրանոյդ,
Ջիր և կարմիր գոյն անկողնոյդ.
Ժանիք փըղայ կազմ աթոռոյդ,
Ոսկեպաղպաջ տեղ Թագուհւոյդ։

Գորշապահանկ քում լուսելոյդ,
Քառամանեակ յըղկեալ ուսոյդ.
Անուր՛ ազնիւ հոտոտելոյդ,
Ապարանջան ՚ի ձեռն աջոյդ։
Ընկուզազարդ ծրագարանոյդ
Լուսապատար ջահ լուցելոյդ,
Պարարտացեալ տունկ տենչալոյդ,
Յաջ և յահեակ շիւղ ձիթենւոյդ։
Գոտեւորեալ շուրջ սեղանոյդ,
Բնակեալն ՚ի քեզ Տէրն անձանձրոյթ.
Անասելի գեղեցկութիւնդ,
Անպատմելի երգ սիրանոյդ։
Ո՛չ թէ զգալին է քեզ յարմար,
Ո՛վ պանծալի տուն և տաճար.
Այլ զփնտեսիցըն հոգ տարար,
Զիմանալի զգեստն ըզգեցար։
Խազ սուրբ գըլխոյդ խորհըրդաբար,
Նօթն խորհուրդ պատշաճաբար,
Ակունք և շեղջ մարգարտաց շար,
Վարդապետօք զարդարեցար։
Քըրքում զըմուռ յորմէ լըւար,
Օրհներգութեամբըն զմայլեցար,

Ոսկետըտամբն որ ծածկեցար.
Հայրապետօքըն գըգուեցար։
Հիր և կարմիր ծիրանի ծաղ,
Փըխոփայիւք ուրախ։այար.
Ի փըղոսկրեայ գահըն նըստար,
Յոգիս մաքուր արանց հանգեար։
Քառից հիւսեալ շարոց կամար,
Կրօնաւորաց երամք և պար.
Ընուր աղնիւ 'ի քիմդ արկար,
Յերգ սաղմոսին հոտոտեցար։
Աշտանակին բազմանըկար,
Աղօթողաց դաքն անդադար,
Ճիւղ ձիթենւոյն պարարտացեալ,
Կղերիկոսացն առեալ քընար։
Որդին մարդոյ գօտևորեալ,
Տեառն Յիսուսիւ պայծառացեալ.
Երաժըշտաց դասիւք սընար,
Յաշակերտացն երանեցար։
Անասելի գեղեցկութիւնդ,
Մեծ սքանչելեօքըն հրաշացար.
Որով սպանեալ ծառայն յարեաւ.
Նոյն համբաւովըն ճոխացար։

Յամենայնէ ներբողեցար,
Եւ յընդհանուրս փառաւորեցար.
Ծունըր կըրկնեմ քեզ տիրամա՛յր,
Գըթա՛ 'ի յիս որդիաբար։
Մի՛ բարկանցիս՝ թէ հարցանեմ,
Զպատճառն՝ յորմէ աղքատացար.
Արդ յաւելից ընդ քեզ զըրոյց,
Ո՛վ բարձրաբերձ լուս սկաւառայդ։
Վասն է՞ր գոչես սըրտէ խորոց,
Յորդւոց՝ կարօտ որպէս ամլոց.
Ո՞ւր են ընտիրքըն քո ծնընդոց,
Արքայասընունդ դասքն օծելոց։
Ո՞ւր է բարբառըն քո փողոց.
Բարունակապետք մե՛ծ ի՛նչք դըրոց.
Ո՞ւր դասատուն մեծ իմաստնոց.
Որք հընչէին նըման ամպոց։
Ո՞ւր եղանակ քաղցրիկ երգոց,
Երաժըշտաց մաքուր հոգւոց.
Աւա՜ղ յիշման այս աղէտոյս,
Որ խոցոտեալ վէրօք լեցոյց։
Զի խափանեալ է յաթոռոց,
Եւ պատասխան հարցանելոց.

Ո՞ւր պաշտօնեայք և հոյլք դըպրաց,
Նորգ՝ աչէլուք՝ քուրմունք խընկոց։
  Ո՞ւր բեմբասացն ընթերցելոց,
Եւ գիշերի հըսկումն արթնոց.
Ահա եղծեալ ամենեցունց,
Ան հետացեալ ըստ երազոց։
  Ո՞ւր է հանդերձք ոսկեթելոց,
Վերուստ անկեալն 'ի յերկնայնոց.
Ո՞ւր երանիին՝ վա՛շ գովելոց,
Եւ ցանկութիւն կարօտելոց։
  Ահա գնացեալ ըստ մեռելոց,
Եւ կամ՝ գանօթ կորուսելոց.
Ո՞ւր է խընդրողըն քո տըրոց,
Սիրող ուսման և սուրբ վարուց։
  Ո՞ւր վերծանողն հընոց նորոց,
Հըմուտ նըրբիցն և արտաքնոց.
Ահա ո՛չ ոք է 'ի միջի,
Ո՛չ 'ի ծերոց և ո՛չ տղայոց։
  Ո՞ւր է ղամբարըն կազմելոց,
Ջահընկալեց կարգ ընտրելոց.
Ո՞ւր լապտերաց բորբոքելոց,
Սպասաւորաց իւղն արկելոց։

Ահա խաւարն է քեզ ծածկող,
Մութն և նըսեմն արկեալ կըրկնոց.
Աչեցդ լըցեալ որպէս ծովուց,
Թափցեալ մահճացն ընդ անկողնոց։
Իբրև զայրի կին տառապեալ,
Եւ կամ յարանց հեռացելոց.
Եւ ո՛չ ոք է մըխիթարող,
Որպէս երբեմն Եբրայեցւոց,
Զարթի՛ր զարթի՛ր Երեմիայ,
Զարթո՛ ընդ քեզ զտաւիղն ողբոց.
Քանզի լըքեալ է յարկ սըրբոց,
Քակտեալ տեղի ժառանգելոց։
Խախտեալ շինուածըն սեղանոց,
Որ կեանըս տայր մերձեցելոց.
Օտարացեալ կոչեցելոցս,
Եւ հեռացեալ հրաւիրելոց։
Տեսք փեսային է ինձ հընոց,
Պէմք Թագուհւոյն կըրակ և բոց.
Խաւար արնեակն եղկելոյս խոց,
Մըթին տեղին զիս դառնացոյց։
Այս ամենայն վասն իմ գործոց,
Ընթիւ մեղաց և յանցուածոց.

Որ խըռոացեալ է քան զամպոց,
Եւ քան զերկրի անթիւ բուսոց։
Ո՛վ որ զըլթացի տիրամայր Կոյս,
Տացէ Փըրկչին բանս հայցուածոց.
Ընդ ազատեալ բանտեալ հոգւոց,
Փըրկէ և զիս 'ի դըժոխոց։
Պատասխանէ հարցմանն իմոց,
Ո՛վ որ ապիկարս նըմա ծանոյց.
Արդ առնիցեմ քեզ պատասխան,
Ո՛վ ողբերգող և ճարտասան։
Արդ ամենայն որ գըրեցան,
Նըման ծաղկանց փութով անցան.
Յորժամ մեղացն 'ի գլուխ ելան,
Եւ չափ չարեացն առաւելան։
Յայնժամ իմոյս փարթամութեան,
Հասեալ վերջին աղքատութեան.
Ո՛վ որ տեսանես դէմ յանդիման,
Ո՛չ ոք յուխտից 'ի յիս նըման։
Թէպէտ ինև իմաստնացան,
Ժամատեղաց ըղկարգն ուսան.
Տօնացուցիւ պայծառացան,
Այլասեռիցըն վեհ գըտան։

Քան զՅունականս այլ ճոխացեալ,
Վրաց՝ և Աղուանից Թագ և պարծան,
Հռոմայեցւոց և Ասորոց,
Եւ Ընկռուզացն են գովասան։
Ի Հապաշէց և Մարունեաց,
Եւ ՚ի Գըպթոյն՝ Հայք գովեցան.
Եզգին Հընդկաց և Բուլղարաց,
Իմաստասանցն երանեցան։
Իմոյս կարգով ամենեքեան,
Վանք ՚ւ անապատք զարդարեցան.
Մայր կոչէի իմաստութեան,
Որպէս Աթէնքն Արիսպադեան։
Երկրորդ էի Թարմակիայ,
Եւ Թեբայիթ Եգիպտական.
Մեծ պարծէի քան ըզՍինա.
Եւ գերագոյն քան ըզՓառան։
Ճոխ ճեմէի քան ըզՍեպուհ,
Եւ քան զՄասիսն Արարատեան.
Յանդըրգնագոյն է և ասելս,
Քան ըզԹափօր ընդ Հերմոնեան։
Զի ՚ի նոսա մասամբ ցուցան,
Եւ իմ խորհուրդս գուշակեցան.

Իսկ կատարումն համանգամայն,
Ի յիս կըրկին նորոգեցան։
Տեղ եմ փառաց Աստուածութեան,
Եւ սուրբ հարանցըն կայարան.
Որք պարէին 'ի յիմ խորան,
Կարգեալ 'ի կարգ և յաստիճան։
Արդ հեռացեալ է ամենայն,
Մ՚իայնացեալ եմ զերդ գազան.
Եւ քան ըղձու յաւերակի,
Իմէջ՛ Հայոց կամ անխնամ։
Զաչերս ածեմ կողկողական,
Ձայն հառաչեմ ողորմական.
Ո՞ւր էք որդի՛ք իմ ծնընդեան,
Եկա՛յք առ մայրս ձեր լալական։
Ահա հասեալ է ինձ ատեան,
Աղքատութիւն 'ի ծերութեան,
Ունայնութիւն 'ի լրութեան,
Թըշուառութիւն հարըստութեան։
Ամենայնի եմ անպիտան,
Յայգեստանեայս եղեալ խոպան.
Փուշ է բուսեալ որթոյն փոխան,
Արէք և կինչք արածեցան։

Եղեգնաւորք մրտեալ որսան,
Զիս արարին տեղի սպանման.
Ո՛չ ոք լսէ իմս հեծութեան,
Իբանական որդւոց մարդկան.
Բայց թէ ողնոյն և ջայլեման,
Որ յանապատս բնակեցան.
Եւ կամ հօրանք Թուրքից Մարաց,
Խառնակ մանկունքն անօրինաց։
Որք արարին կոխան ոտաց,
Գոմ և փարախ հօտից խաշանց.
Զայն արկանեմ պաղատանաց,
Եկեղեցեաց Հայաստանեայց։
Բոլորեցունց չորեք անկեանց,
Գալ 'ի կոչումն իմ դըստերաց.
Արգեալ ողբով հեծեծանաց,
Կական բառնալ հառաչանաց։
Վա՛յ 'ի վերայ վայի տալ ինձ,
Որ մերկացայ 'ի յիմ. փառաց.
Եղո՜ւկ ասել ընդ արտասուաց,
Ողբս յօրինել աշխարանաց։
Զի ո՞ւր էի՝ ո՛ւր եմ ա՛նկած,
Յերկնից յերկիր կամ խոնարհած,

Երբեմն արեւ յարփոյն ծընած,
Այժմ խաւար եմ թանձրամած։
  Երբեմն էի թագ պարծանաց,
Արդ հաւասար եմ գըռեհաց։
Երբեմն հարսն էի զարդարած,
Գիրկ փեսային պատուասիրած,
  Այժըմ սեղեխ եմ օտարաց,
Նըման յարդի անպէտ հոսած.
Արդ դուք որդի՛ք իմ սիրեցած,
Որ էք տեսող 'նախկին կենաց.
  Տեսէ՛ք զվերջինս իմ ժամանեաց,
Ունայնացեալ 'ի յիմ բարեաց.
Ածէ՛ք առ իս զպարս տեսողացն,
Զմարգարէիցն ողբերգողացն.
  Որք են հըմուտ լալոյն գերեաց,
Միթէ ողբան 'ստ եղանակաց.
Այցեն կըցորդ զթաղծեալս ինքեանց,
Որք ինձ նըման են յետ ձըգած։
  Ո՛չ թէ Տեառնէ անտես եղած,
Այլ 'ի մերոց ապաստաւորաց.
Վասըն նոցա անթիւ չարեաց,
Յանտառս մայրոյ եմք համարած։

Արօրադիր և կորդացած,
Զ'անապարհաց մեր և դըլլանց.
Եւ այժմ կամք յուսահատած,
Նորոգմանէն յոյժ վերջացած։
Բայց թէ լինի այց 'ի բարձանց,
Ըստ ոչխարին որ մոլորած,
Շինի կըրկին աւերակաց,
Իբնակութիւն կրօնաւորաց։
Դընի աթոռ վարդապետաց,
Տրամաբանել աշակերտաց.
Զայն բարձրանայ եղանակաց,
Վ'աշահընչող պաշտեցողաց։
Ասել վերջնոցըն տեսողաց,
Բան զառաջին պայծառ փայլեաց.
Փառս առաք'ըլ Երրորդութեան.
Որ Արարիչն է յաւիտեանց։
Յորմէ գըլթայ Տէրըն տէրանց,
Ախմեօնի որ զայս ոգեաց.
Նա և երկուցըն խընդրողաց,
Ուսումնասէր համաձայնեղաց,
Կիրակոսի պետին պատուած;
Անանիայ շնորհօք օծած,

Այրարատեան տանէն եկած,
Յուսմունս տաւիղ կան գեգերած։
  Ողորմեսցի անեղն Աստուած,
Արժան լինել աստիճանաց,
Առնուլ հրաման քարոզելոյ,
Եւ գաւազան իշխանութեանց։

Բոփ անոան Ներքողին։

  Սուրբ երջանիկ Կաթուղիկէ,
Ներքնահանդէս խորան յերկրէ.
Տուն Աստուծոյ զքեզ վկայէ,
Օծեալն իւղով 'ի Սամուելէ։
  Ընկալ' քեզ ողբ և հառաչէ,
Հանդերձ որդւովքդ որ մնացեալ է.
Վային ծնընդօքդ զերգըս երգէ,
Հայաստանօք՝ որ նուաղեալ է։
  Ի քէն ծնեալ Բանն 'ի Հօրէ,
Որ էր ընդ Հօր իսկըզբանէ.
Բարեխօսեա՛ զի կեցուսցէ,
Զմեղօք մեռեալս 'ի բանսարկուէ։
  Ի յառագաստըն հրաւիրէ,
Ընդ իմաստունսըն մուծանէ.

Ըստ բախելոյն զմուտըն բացցէ.
Ըստ ժըտելոյն հատուցանէ։
Մաքուր տաճար Աստուածաբնակ,
Տիրահրաւէր գերահռչակ.
Ոսկեզարբեր տունկ բարունակ,
Սեռըն սիրոյն ոսկի բաժակ։
Առցես զընծայս բանիս պիտակ,
Եւ մի՛ լեցի անընդունակ.
Մաքրեա՛ զհոգիս մըրրատեսակ,
Անապական վարուքն յըստակ։
Էջին որդւոյ քո Միածնի,
Բարեխօսեա՛ սուրբ Տիրուհի.
Զի խընդրողացն ողորմեսցի,
Աշակերտաց Տեառըն բանի,
Շնորհազարդեալ Կիրակոսի,
Անանիայ սըրբասիրի.
Որք հարկ եդին ինձ անմըտի,
Տաղաչափել զգիրս Պազարի։
Ոգեալ ոտիւք Հոմերապէս,
Զթագաւորաց Ճառըն պէս պէս.
Որ քաջացան արիապէս,
Կանեալ զներհակսըն տիրապէս։

Վասն այսորիկ տաժանացայ,
Գըրել չափով ըզքանս՛ 'ի սմա.
Զի ընթերցողըն զուարճանայ,
Յորժամ յիմաստըն մերձենայ։
Նըման այրւոյն տառապելոյ,
Ի Քրիստոսէ երանելոյ,
Մատուցանեմ զծնունդըս հոգւոյ,
Փափաքողացն նուէրք յարգոյ։
Էմմանուէ՛լ որդի կուսի,
Գին եմ արեանդ անարատի,
Ողորմեցիս քում ծառայի,
Եղեռնագործ Սիմկովնի։
Որքեա՛ն ըզմիտս իմ 'ի մեղաց,
Տաճարացո՛ հոգւոյդ շնորհաց,
Սիրել ըզքեզ 'ի պարզ մըտաց,
Լինել անուանդ քո երկիւղած։
Քեզ գոհութիւն՝ փառք 'ի բարձանց,
Յիմանալեացն և իզգալեաց.
Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն,
Յանցեալն յայժմոյս և յապառնեայս։

Ի վերայ տաճարին Թուարքեզեայ, որ առաւ է յՕսմանեանէ. և այլ ողբ 'ի վերայ փառաւորեալ ազգին Հայոց, առաջեալ 'ի Աթենքն վայ-րագեալ։

Սիրդ 'ի թվին հազար 'ւ երսուն,
Զորս ընդ նըմին գըծէ անկուն,
Պաճարամիտ ազգ Հագարուն,
Զօրաժողով եղև անհուն։
Ըսպատակեալ 'ի Պարսկաստուն,
Բռնեալ զԹաւրէզըն Շահաստուն,
Օսման կացեալ զըլուխ զօրուն,
Ըծէ աւեր աշխարհիս բուն։
Խաղմահըրմուտ Կըզըլ Թաճլուն,
Ընդ դէմ սորա եղև նըկուն.
Ըյնպէս փախեաւ 'ի յՕսմանէ,
Զինչ յառիւծէ գունդն աղուէսուն։
Եյս ո՛չ յինքեանց՝ այլ 'ի Հօգւոյն,
Ա՛յն որ բաշխէ զԹագըն գըլխոյն.
Բանք Եըլամայ և ազգ Սկիւթոյն,
Արբին զմըրրուր ցասման գինւոյն։
Այն՝ զոր Վարդան Մամիկոնուն,

Երբ և ետուր զբաժակն սոյաւն.
Նախանձեցաւ Տէր ընդ Սիոնս,
Հատոյց ըզփոխն 'ի ծոց նոցուն։
Նախ Երեմիոյ զեկոյց ըղձոյն,
Զաքարիայ նորին հանգոյն.
Յայգ ցաւագին տայ երեկոյն,
Յընծուղ ցօղ աչք Հայկազնոյն։
Յանկ անմահու ասեն ըզնոյն,
Վա՜հ որք առին զճաշակ մահուն.
Ա՛հ ընդմնացեալքս սուտ կենդանուոյն,
Զխանձեալքս 'ի ձեռն Իսմայելուն։
Ողբողք չունիմք 'միջի մերում,
Որ երախան կազմէ լալոյն.
Յիսրայելէ կոչեմ ըզսոյն,
Որք են հըմուտ գերոյ սըգոյն։
Երա՛մք կանանց և դասք ջայլից.
Եկա՛յք կացէք գըլուխ պարոյն.
Ողորմ լացէք զմեզ արտասուօք,
Հանց որ հաւնի ձեզ խմաստուն։
Նըման ամպոց յորդ հոսեցէք,
Դաւան արտասուս յաչաց ձերում.
Զայս ասացէք՝ թէ՝ ո՞վ քա՛ւ,

Որ մեզ եղև ծանրացաւումն։
Մեծ բըռնաւորն Խօնթքար անուն,
Գըլխոյս երետ մեզ կընդութիւն.
Այն դուզնաքեայ սակաւ շորոյն,
Արժան չարար զհօտ խաչելոյն։
Կատարեցաւ բանըն գըրոյն,
Տեսանողին այն Եզեկուացւոյն.
Ահա ամեն հասակ 'ի սուգ,
Եւ սեաւ գըղակ փոխան գօտոյն։
Ե՛ արեգակ՝ ե՞ր կու ծագես,
Ըզլոյսդ մեր աչքն որ զայն տեսնուն.
Ե շամանդաղ գիշերային,
Ե՞ր փոխարկես զգոյն նըսեմոյն։
Օհ դառնաշունչ օդ ձըմերանս,
Զանցնի որ մեզ լինի գարուն.
Բայց ակն ունիմք Յիսուս Փըրկիչն,
Որ ջերմ առնէ զգոլ արևուն։
Սառըն հալի 'ստ երգոց երգոյն,
Քաղցրիկ հընչէ ձայն տատրակուն.
Մարդիկք միմեանց տան աւետիք,
Ասեն եկաւ մեզ նոր գարուն։
Չէ՛ պարտ կըտրել ըզթել յուսոյն,

Քան զիսրայէլ 'ի Բաբելոն.
Այլ յոյս առնուլ զմանկունս հըրոյն;
Եւ երգեսցո՛ւք զերգըս նոցուն:
Մի՞թէ կարէ ըզչափ չարին,
Փըրկէ ըզմեզ 'ի յապառնոյն.
Ասէ հաշտեալ եմ ընդ խախտեալդ,
Քակտել զշինուածդ ոչ յաւելում:
Աստանօր բանս առցէ զլըրումն,
Զի մի՛ լիցի լուր. ծանրագոյն.
Քանզի յաճախին է ձանձրացկոտ,
Սակաւն ախորժ ամենեցուն:
Արմինիրի ես Ոիմզօն,
Զներկայս առեալ 'ի պատմութիւն,
Իբր արձանի անջինջ գըրոյն,
Ազդէ զեղեալսն և զպատահումն:
Մոխրամածեալ դիմօք փրծուն,
Առ ոտըս ձեր կամ ստորնագոյն.
Եղեռնագործս չարեաց ներհուն,
Բարեաց տարտամ և անքեղուն:
Ունայն թափուր յիմաստութեանց,
Տըգիտութեամբ լի և զեղուն.
Վէս և յանդուգն յամենայնի,

Որ[illegible]ն կենօքըս վըշտագոյն։
Նաւավարող զիս կարծեցի.
Բայց սուզեցայ յատակս ծովուն.
Նրանութեանց Պուլթի երգոյն,
Վերջոտնեցայ 'ի լոյս շաւղոյն։
Մեր աշխարհիս է քաղցրագոյն,
Մխալեաց տրար զիս ազազուն.
Նարկ 'ի գուբ մեղաց տըղմոյն,
Զատեալ է հնարքս ելանելոյն։
Բայց ձեռընտուն ամենայնի,
Միթէ խնամէ ըստ իւր գըթոյն.
Զիս վերածցէ կարթիւն իւրով,
Զանցէ տեղիս անկեալ դասուն։
Եւ ես հանգեմ նմա օրհնութիւն,
Ընկըռելի մըշտապաշտուն.
Ըզքանական աղօթս խօսուն,
Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն։